Որևէ զորամաս կազմավորվելիս, նրան հանձնվում է մարտական դրոշ։ Կանոնադրության մեջ նշված է, որ մարտական դրոշը զինվորական պատվի, արիության և փառքի խորհրդանիշն է, յուրաքանչյուր զինծառայողի հիշեցնում է իր սրբազան պարտքը՝ հավատարմորեն ծառայել սովետական հայրենիքին։

Հավատարիմ լինել զորամասի կամ նավի մարտական դրոշին—ահա սովետական զինվորների հերոսական ավանդույթներից մեկը։ Ավանդույթ, որ ծնվել է մեր հայրենիքի ազատության և անկախության պայքարի բովում։

Սովետական զինված ուժերի կենտրոնական թանգարանում պահվում է 15-րդ Իդրիցկյան Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշանակիր դիվիզիայի մարտական դրոշը։ Հին Ռուսիայից հասնելով Բեռլին, դիվիզիայի մարտիկները Ռայխստագի վրա կանգնեցրին դրոշը, որը պատմության մեջ մտավ որպես հաղթական դրոշ։



# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
## №: 5 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ




Շապիկի առաջին և չորրորդ էջերի

լուսանկարները՝
ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱԼԱՋՅԱՆԻ

ԳՐԻԳՈՐ ՄԱՋՄԱՆՅԱՆ




Հրդեհ ու ծուխ է էկրանին կապույտ,
Ամռան ոսկեծուփ արտերն են այրվում,
Արկերը հողն են բզկտում անգութ,
Ջարդված ծառերը հողին են փարվում:

Ծուխը երկինքն է պատել կապուտակ,
(Էկրանի վրա թեժ պահ է մարտի),
Ա՜խ, ո՞ւր են մերոնք՝ զինվորները քաջ,
Որ կարմիր աստղեր ունեն ճակատին:

Քիչ անց գրոհ է. մերոնք են գալիս,
Լսվում է նրանց «ուռա» ցնծագին,
Աչքերը ցասման կրակով են լի,
Դեմքերին բոցը արևածագի...

Կուզեի ես էլ նրանց հետ լինել,
Անցնել նրանց հետ սխրանքի ճամփա,
Հագիս զինվորի ոսկեկար շինել
Ու ոսոխի դեմ կռվել քաջաբար:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ

# ՋՈՒԹԱԿԱՀԱՐԸ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Մեկը անջատվեց ծխի ու փոշու քուլաներից... Սողում է, քարշ գալիս, հողին կպած առաջանում: Գերմանացիները կրակի տակ են առել դիրքը լքած զինվորին, գնդացիրները տկտկում են, աղմկում:

Մի պահ անշարժացավ, գուցե գնդակը խոցեց: Ո՛չ, նորից սողում է, առաջանում, շարժվում դեպի մեր խրամատները: Ահա անցնում է առաջավոր գիծը: Մենք չենք կրակում, այլ ուշադիր հետևում ենք: Տասը քայլ է մեզ իրարից բաժանում: Մոտենում եմ, մեջքի վրա շրջում, վիրավոր է: Ջարդված ոտքը լախտի նման քարշ է տալիս ետևից: Ճակատից արյուն է հոսում: Հանում եմ վիրակապը, գլուխը փաթաթում: Ջրով լի տափաշիշը մոտեցնում եմ շուրթերին: Դողում է, զննող հայացքով նայում ինձ, կծկվում է՝ աչքերը լայն բացած նայում ինձ, կցկտուր բառեր արտասանում: Չեմ հասկանում: Նրան քաշում, տանում եմ խրամատ:

Երեկոյան բժշկական ծառայության աշխատողները զինվորական դաշտային հիվանդանոց են տեղափոխում նաև ծանր վիրավոր գերմանացի զինվորին...

... Ամիսներ անց, հունվարյան մի ցուրտ օր մարտում վիրավորվեցի: Ինձ նույնպես տեղափոխեցին թիկունք, զինվորական հիվանդանոց: Այստեղ մի ջահել գերմանացի ջութակահար կար: Կատակ թե իրոք. ասացին, թե մեծ երգահան Շումանի ծոռն է: Ամեն օր, ապաքինված զինվորների առավոտյան մարզումների ժամին, շարքերի մեջ կանգնած, չգիտեմ ինչպես ձեռք բերած ջութակը ծնոտի տակ սեղմած, կլանված նվագում էր: Խոսում էր ռուսերեն, հաճույք պատճառելով խոսակիցներին:

Գանգուր մազերի տակից կարմիր թելի նման երկու սպի էր երկարել մինչև քունքերը: Պատանի էր, հազիվ տասնհինգ տարեկան, Դրեզդենի կոնսերվատորիայի ուսանող, երկու օր էր եղել մարտի դաշտում, երկու օր կրակի տակ:

Երեք շաբաթ տևեց իմ բուժումը, նորից մեկնում եմ ռազմաճակատ:

Մեկնումից առաջ, զինվորական հագուստով մի աղջիկ մեզ՝ ռազմաճակատ մեկնողներիս լուսանկարեց: Խմբի մեջտեղում՝ ջութակը ծնոտի տակ, կանգնած էր ջահել ջութակահարը:

Ես նրան չհիշեցրի մեր առաջին հան-

դիպման մասին, երևի ինքը ճանաչեց, հրաժեշտի պահին ձեռքս սեղմեց, քաղաքավարությամբ խոնարհվեց, հաջողություն ցանկացավ։

Անցյալ տարի ընկերս՝ Հովհաննեսը վերադարձավ Գերմանիայի Դեմոկրատական Հանրապետություն կատարած տուրիստական ուղևորությունից ու ասաց.

— Գիտե՞ս, քո նկարը տեսել եմ Բեռլինի մի թանգարանում, գունավոր, ծավալուն մի նկար, մի խումբ զինվորների հետ։ Նկարի շրջանակի տակ գրված էր. «Ձախից երկրորդը այն զինվորն է, որ փրկել է անվանի ջութակահարի կյանքը»։

## ՄՈԼՈՐՎԱԾՆԵՐԸ

Ճանապարհի մեջ կանգ առավ «Օպել» սիստեմի մարդատար մեքենան։ Երեք բարձրաստիճան գերմանացի զինվորականներ իջան մեքենայից։

Նրանք վիճում էին։

Կորցրել էին ճանապարհը։

Նրանցից մեկը պայուսակից հանեց զինվորական քարտեզը, փորձեց վրան հարմարեցնել կողմնացույցը։

Այս մոլորվածներն անհետ կկորչեին ռուսական անտառներում, եթե վրա չհասնեին պարտիզանները և չուղեկցեին նրանց ուր հարկն է։

## «ԱՆԱՀԻՏ»

Բրանդենբուրգ քաղաքում գերմանացիները հիտլերականների զազանությունների մասին պատմող մի հնություն էին անփոփոխ թողել։ Շենքը պատերազմի ժամանակ գերիների ճամբար էր եղել, ո՛չ լուսանկարներ, ո՛չ փաստաթղթեր, ոչինչ չկար, միայն խոնավ պատերին տարբեր լեզուներով, տարբեր ձեռագրերով մակագրություններ էին արված։

Անծանոթ գրերի մեջ աչքիս ընկավ իմ մայրենի՝ մեսրոպյան տառերով գրված մի անուն՝ «Անահիտ»։

Ո՞վ է գրել, ո՞վ է մահից առաջ հիշել հարազատին։

Ի՞նչ իմանաս, այնքա՜ն շատ են Անահիտները Հայաստան աշխարհի։

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

## ԳԱԳԱԹՆԵՐԻՆ ԱՐԱԳԱԾԻ

Ամպերն եկան ու գնացին,
Ամպերն եկան ու գնացին,
Տեսեք, արդեն կուտակվել են
Գագաթներին Արագածի,
Գալարվում են, գոռում, եռում,
Կայծակներ են կարծես կռում
Ու փորձում են շանթերն իրենց
Երկինքներում մոտ ու հեռու...

## ՔԱՄԻՆԵՐՆ ՈՒ ԾԱՂԻԿԸ

Քամիների միշտ նույն խաղից
Ձանձրացել էր մի լավ ծաղիկ.
Ծաղիկն ասաց՝ էլ չեմ կարող,
Մեկնումեկը թող ինձ քաղի...

Ես, որ ծաղիկ շատ եմ սիրում,
Կպոկեի նրան թաղից,
Բայց վախենում եմ՝ անծաղիկ
Դաշտն այլևս չծիծաղի...

ՄԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# Ո՛Չ ԻՆՁ, Ո՛Չ ՔԵԶ

Ողջ բակի մեջ
Մեկը չկար հետը խաղար,
Ով որ փորձեր ընկերանալ՝
Խաղից հետո
Կոտրած քթով տուն կգնար:

Եվ սա ուզեց
Իրենց բակի մեծ ծառի տակ
Տուն կառուցել.
Ավազ բերեց,
Պատուհանի փեղկերի տեղ՝
Լուցկու տուփեր,
Մանրիկ քարեր՝
Սյուն ու հենակ,
Բայց չէր մնում
Քարը քարին...

Երբ որ մեկ էլ իրեն-իրեն
Ծատիկ Կարոն մոտիկ եկավ,
Մեծավարի անցավ գործի.
— Ութ հարկանի...

Լսեց Գևոն ու ի՞նչ ասի,
Որ լավ լինի.
«Նա կառուցի ութ հարկանի՞,
Հետո վերջում ինձ ձեռ առնի՞»:
— Տունը պիտի իմը լինի.
Ես եմ բերել քար ու ավազ,
Տեղն էլ իմն է՝
Ես եմ գտել,
Իմն է ու վերջ,
Թե չես ուզում քոթակ ուտել:

Ծիծաղում է փոքրիկ Կարոն.
— Թող քեզ լինի:—
Ու շարժվում են մատիկները
Շենքի բոլոր ութ հարկերով:
«Սրան նայիր,
Ոնց է շարում քարը-քարին.
Չառնե՞մ հիմա
Մի քար՝ զարկեմ հենց ձեռքերին:
Բա սա լինի ինձնից խելո՞ք,
Նա՝ կառուցող, ես՝ անշնո՞րհք»:
Ու մոտեցավ թաքուն-թաքուն,
Ութ հարկերն էլ
Փլեց ոտքի մի հարվածով:
Մինչդեռ Կարոն լաց էր լինում,
Ծլկեց Գևոն, էլ ի՜նչ անես,
Դեռ, տես, հեռվից լեզու հանում,
Ձեռ է առնում.
— Ո՛չ ինձ, ո՛չ քեզ, ո՛չ ինձ, ո՛չ քեզ:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# ՆԱՐԵԿՆ ՈՒ ՆՈՒՆԵՆ

Նկարեցի կապույտ մի սար,
Դասից եկավ քույրս՝ Նունեն,
Նկարածս տեսավ, ասաց.
— Այս ի՞նչ սար է, այս ի՞նչ ձյուն է...
Նարե՛կ, այս ի՛նչ լավ ես արել,
Գուցե ինքդ էլ չես իմացել,
Որ Մասիս սարն ես նկարել...
Բայց տես, ոչինչ չե՛ս մոռացել...
Հապա վերցրո՛ւ մոխրագույնը,
Մեր այս կապույտ սարի լանջին
Ծուխ նկարիր և մեր տունը,
Իսկ տան բակում՝ աղբյուր մի ջինջ:
Ո՞ւր է, ցո՛ւյց տուր կանաչ գույնը,
Չունե՞ս, ոչի՛նչ, մի՛ սրտնեղիր:
Դեղին գույնով,— ասաց Նունեն,—
Ծառերն արա դեղին-դեղին,
Պատկերացնենք, որ աշուն է:
Ի՞նչ մոռացանք, ի՞նչը մնաց...
Հա՛, բա բակի փոքրիկ շու՞նը,
Թող նա լինի շեմին նստած:
Աղբյուրի մոտ նկարիր լոր,
Որ իջել ու խմում է ջուր,
Եվ՝ մի առվակ ոլոր-մոլոր,
Որ քչքչում, մեզ է կանչում:

# ԳԱՅԱՆԵՆ ԵՎ ԿԿՈՒՆ

— Հավքերն անտառի քնել են մուշ-մուշ,
Տեսնես, կկվիկը ինչո՞ւ չի քնում,
Այդ ո՞ւմ է կանչում, չէ՞ որ շատ է ուշ,
Ի՞նչ է պատահել, բան չեմ հասկանում:

«Բարի գիշեր»-ն է Գայանեն լսում,
Բայց միտքը անքուն կկվիկի կողմն է.
— Գուցե սովա՞ծ է կամ շա՞տ է մրսում,
Մութ է, բայց նա դեռ չի ուզում քնել:

Դու գնա քնի՛ր, փոքրի՛կ Գայանե,
Կկվիկն իր մորն է սպասում, եկավ,
Ծոյեց ձագուկին, ձագուկը քնեց,
Քնեց ու կապույտ երազներ հագավ:

Գնա՛ և ննջիր դու էլ, Գայանե՛,
Եվ դո՛ւ էլ հագիր երազներ լազուր...
Կկվի ձագն արդեն քնել է, քնել
Եվ քո ճամփան է պահում երազում:

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 6. ԳԵՂԱՐԴԱՁՈՐՈՒՄ

Գարուն էր: Գեղարդի ձորը լցվել էր սիբեխով, մանդակով ու քեղով, դժվար էր նրանց զգլխիչ հոտերին դիմանալ: Մինչև կեսօր քարանձավներն էինք մագլցում, կեսօրից հետո էլ ուսապարկերը կանաչիներով լցրած՝ տուն գալիս: Այնքան գնացինք-եկանք, մինչև որ և՛ քեղն ու սիբեխը վերջացան, և՛ մենք քարանձավների գործը ավարտեցինք: Վերջում մենք էլ էինք զարմացել, որ հեռվից երևացող մի քանի անմատչելի անցքեր ոչ ավելի, ոչ պակաս յոթանասուն ժայռափոր սենյակներ են: Այն խումբը, որը վանք տանող ճանապարհի ձախ կողմում էր՝ երկհարկանի քարայրներ էին, գեղեցիկ, սրբատաշ, բնակելի սենյակներ, ննջարաններ, աղոթքի խցեր: Հավանաբար ճգնավորներ են ապրել: Իզուր չէ ժողովուրդը այս քարայրները Ճգնավորներ անվանում:

Վանքից արևելք մի քարայր կա, որտեղ, ըստ ավանդության, ճգնել է Գրիգոր Լուսավորիչը: Դրա կողքին, ժայռի տակ, մի փոքրիկ անցք է նշմարվում: Չի հասկացվում, մա՞րդն է փորել, թե՞ բնությունը: Մուրճերով անցքը լայնացրինք ու ներս սողացինք: Ա՜յ քեզ անակնկալ. հայտնվեցինք մի գողտրիկ մատուռում, նույնիսկ քարե բեմն էր պահպանվել: Դու մի ասի անցքն էլ մատուռի լուսամուտն է եղել, գողի նման ենք ներս մտել: Սողում ենք առաջ, անցնում փլված քարերի արանքով ու հայտնվում մի ավելի մեծ քարայրում: Սա էլ երևի ժայռափոր եկեղեցի է: Չափագրեցինք ու դուրս սողացինք:

Բարձրանում ենք Գեղարդի վանքի այգու վերևի քարայրները: Հեշտ ժայռեր են, համարյա վազելով էինք գնում: Ձեռքս գցեցի, որ քարից բռնեմ: Ոնց որ թե «նըստած» քար լիներ, բայց պոկվեց ու եկավ վրաս: Հազիվ հասցրի քարը սեղմել ժայռին, որ ինձ էլ հետը ցած չտանի: Սառը քրտինքը պատեց ինձ, ա՜յ քեզ հիմարություն, այդ էր մնացել, որ այսքան վտանգներից հետո, հանկարծ այսպիսի խղճուկ տեղում այսքան տարի պահած գլուխս ջարդեի: Զուր չեն ալպինիստները կատակում, թե «ավելի լավ է մարդ չմեռնի, քան թե խղճուկ մահով մեռնի»:

Գեղարդաձորում թափառելիս մենք մո-

բիլիզացրել էինք մոտակա Գողթ գյուղի բոլոր ծերունիներին, որսորդներին, վանքի պահակներին ու մոմ վաճառողներին, այսինքն նրանց, ովքեր լավ գիտեն այդ ձորերի ծակուծուկը: Մի օր մեզ ցույց տվին մի ձոր ու ասացին, որ այնտեղ գտնըվում է «Քառասուն Աստիճաններ» կոչվող քարայրը: Հիմա ես ու Մասիսը փընտրում ենք այդ քարանձավը, ընկել ենք մացառների մեջ ու չենք կարողանում առաջ գնալ: Մեկ էլ վերևից հո անձրև չթափվե՞ց: Անհաջողությունից ու անձրևից գազազած՝ մի կերպ դուրս պրծանք մացառների միջից ու հոտոտում ենք ժայռերի ճեղքերը: Չկա ու չկա: Մոտեցանք մի ժայռի: Նկատեցինք ցած տանող անցքը: Մտանք ներս: Բարձր առաստաղով լայն ու հանդիսավոր քարայր էր, որի ծայրը ցածում կորչում էր խավարի մեջ: Ոնց որ իսկական մետրոյի կայարան լիներ: Իջնում ենք քարե աստիճաններով ու հաշվում: Ուղիղ քառասունի վրա հասանք հատակին...

Մասիսը հետո Գեղարդ գնաց Քառասուն Աստիճանների քարայրը լուսանկարելու, անսպասելի նրա վրա հարձակվեցին վայրենացած շները: Դրանք վխտում են Գեղարդաձորում, բնությունը մաքրելով փնթի այցելուների թողած ուտելիքի անհաշիվ մնացորդներից, մեկ-մեկ էլ ըսպառնալով միայնակ մարդկանց: Դա էլ երևի հաճույքի համար: Եվ ահա հենց անձավի մուտքի առաջ շները կտրում են եղբորս ճանապարհը, թե՝ «Ախպեր ջան, հիմա սրա տերը մենք ենք, ընտանիքատեր ենք, թող գնա»: Վերջը որ իրար լեզու չեն հասկանում, Մասիսը ստիպված ետ է դառնում: Ո՞ւմ մտքով կանցներ, որ անձավախույզի հակառակորդների թվում կլինեն նաև վայրենացած շները. կարծես թե մյուս վտանգները քիչ են:

Գեղարդաձորի քարայրներից մեկի տեղն էլ հայտնեց պատմիչ Առաքել Դավրիժեցին:

«Գառնիում Ամիրգունա խանին հայտնեցին, թե Գառնո գավառում կան ուրիշ գյուղեր ևս, որոնք ամրացել են լեռնային երկրի ամուր վայրերում՝ այրերում և քարանձավների ծերպերում: Եվ անունով հիշատակեցին Հավուց Թառի վանքի Մանուել եպիսկոպոսին և Գեղարդի վանքի Աստվածատուր եպիսկոպոսին, թե մտել են այդ այրերը և այնտեղ ամրացել:

Լսելով այս մասին, Ամիգունա խանը առավ իր մոտ եղած զորքը, եկավ Գեղարդաձոր, և անձամբ գալով այն այրի դիմաց, որտեղ եպիսկոպոսներն էին, բարձունքն ի վեր ձայն տալով, խոսում էր նրանց հետ՝ խաղաղությամբ գալ հնազանդվել թագավորի հրամանին: Իսկ նրանք ոչ միայն տգեղ բառերով անարգում և հայհոյում էին խանին, այլև քար ու նետ ձգում դեպի նա: Երբ խանը տեսավ, որ խաղաղությամբ չեն գալիս հնազանդվելու, այնժամ հրամայեց զորականներին ցանկացած գնով կատարել իր հրամանը: Եվ խանի զորականներից մի քանի քարագնացներ ելան այն լեռան գլուխը, որտեղ այրն էր և ժայռի ցցվածքներից իջան մինչև այրի դռան կողմը, որտեղից հնարավոր էր գնալ: Պարսիկ քարագնացներից մեկը գալով այրի դռան մոտ, որտեղ Մանվել եպիսկոպոսն էր նստած՝ նախ պարսկերեն ողջույն տվեց եպիսկոպոսին, իսկ ապշած եպիսկոպոսը չկարողացավ պատասխանել: Պարսիկն արիացավ սրտով և գործով, մտավ այրը և իսկույն գոտուց կախված թուրը հանելով խփեց ու տեղում սպանեց եպիսկոպոսին և գլուխը կտրելով նետեց խանի առաջ: Ապա պարսից զորականներից ուրիշները ևս արիանալով փութանակի ելան այրը և այդ եպիսկոպոսների ընկերներին նույնպես բռնելով իջեցրին խանի առաջ և բոլորին այնտեղ սպանեցին»:

Մենք այս պատմությանը ծանոթանալով, որոշեցինք գտնել հիշյալ քարայրը՝ ինչքան չլինի սա էլ մեր ժողովրդի պատմության մի մասնիկն է: Հավանական ամեն մի քարայր գտնելիս, տետրը բացում և կարդում էինք Դավրիժեցու նկարագրությունը: Ոչ մեկը չէր համապատասխանում դրան: Երկար որոնումներից հետո եկանք կանգ առանք Գեղարդաձորի ռեստորանի դիմաց՝ ձորի մյուս կողմի անձավի վրա: Կա սա է, չկա սա է: Նույնիսկ անունն է հուշում՝ Զորանոց, այսինքն բերդ, ամրոց:

Զորանոցի ժայռի ստորոտում թոնրատուններ էր ու մառաններ (նույնիսկ երկու հատ): Վերևում՝ ժայռի մեջ նշմարվում էր քարակոփ անցուղու հետքը: Մենք բարձրացանք ու ներս մագլցեցինք: Մեր առջև բացվեց բարձր առաստաղով մի մեծ քարանձավ, որը ժամանակին տախտակամածներով բաժանված է եղել երեք կամ չորս հարկի: Մտովի տեսնում էինք խարխուլ տախտակամածների վրա խռնըված հարյուրավոր մարդկանց, որոնք ահ

ու դողով սպասում էին թշնամու քարագնացներին:

Անձավի մի անկյունում խոհանոցն էր՝ իր պահպանված օջախով, իսկ մյուսում՝ ցորենի հսկայական հորերը: Մտանք հաջորդ հատվածը: Սա արդեն արհեստանան էր և ակնհայտորեն սարքված էր մեծատունների համար, գեղեցիկ, սրբատաշ սյուներով, քարե նստարաններով ու թախտով: Առջևում երկու ժայռափոր պատըշգամբներ ուներ՝ ուղիղ անդունդի վրա կախված:

Մտանք հաջորդ սենյակը: Սա ավելի զուսպ էր կերտած՝ ուղիղ, անզարդ, կիսախավար պատեր: Սա էլ երևի Դավրիժեցու հիշատակած եպիսկոպոսների ննջարանն է եղել: Հետաքրքիր էր, իսկ որտեղի՞ց են իջել Ամիրգունա խանի քարագնացները: Նայեցինք ժայռն ի վեր: Նրա շագանակագույն ճակատին հազիվ նշմարվում էր այսպես կոչված «փախուստի ուղին»: Դրանք Հայաստանի քարանձավային ամրոցների անառիկ ժայռերի մեջ փորված և թշնամու համար անտեսանելի այն աննշմար ցցվածքներն են, որոնք օգտագործվել են միայն պաշարված ամրոցներից հեռանալու ժամանակ: Ուրիշ խոսքով՝ անձավների «գաղտնի մնցքերը»: Հենց Ջորանոցի «փախուստի ուղիով» էլ պարսիկ քարագնացները աննկատ իջել էին ամրոց: Բայց այնտեղ՝ վերևում, ամրոցի պահապանների քարանձավ-պահակակետերն էին, ինչպե՞ս է, որ չեն նկատել: Նշանակում է, թշնամիները կամ նախ նրանց էին կոտորել կամ էլ նույնիսկ ռազմիկ չէր մնացել ամրոցը պաշտպանելու համար, բոլորը գերության էին քշվել:

Մենք Ջորանոցի կամարաձև պատուհանից նայում էինք Գեղարդի վանքին ու չէինք կշտանում՝ ասես առաջին անգամ էինք տեսնում:

Մի քանի ամիս անց, երբ գիշերով անցնում էինք Գեղարդաձորով, տեսանք, որ Ջորանոցի պատուհաններից ծուխ է բարձրանում: Պապերի ամրոցը թոռների համար հանգստյան վայր էր դարձել՝ ժամանակները փոխվել են: Իսկ մենք մտածում ենք այն ժամանակների մասին, երբ ձեռքներս կառնենք բրիչներն ու պարաններից կախված ճոճվելով կնորոգենք ամրոցի ավերված ուղին, որպեսզի մարդիկ բարձրանան այնտեղ և ամրոցի պատուհաններից, առաջին անգամ տեսնողի հրճվանքով, նայեն Գեղարդի վանքին: Նայեն այնպես սիրահարված, ինչպես մենք նայեցինք:

Որոնում էինք Չիթոյի տներ կոչվող անձավները, ասում էին, թե ժամանակին Չիթո անունով մի մարդ իր անասուններն է պահել այնտեղ մի հարյուր տարի առաջ: Որոնումների երրորդ օրն էր. մենք ճանկռոտվել ենք, մեր շորերը պատառոտվել են, իսկ Չիթոյի տները չկան ու չկան: Մեկ էլ ժայռերի մեջ նկատեցինք երկու հատ փոքր քարայրներ՝ սարքված պահակակետերի սկզբունքով: Ուրեմն մոտիկ մի տեղ ավելի նշանակալի քարայրներ կային: Ոգևորվեցինք ու նորից բարձրացանք: Եվ գտանք Չիթոյի տները: Սպիտակ ժայռ էր, բայց մի տեսակ շլացնող սպիտակ: Սրա մեջ փորած էր չորս հարկանի մի մեծ համալիր: Պահպանվել էին հիմնականում վերևի հարկերը: Ահա թոնրատունը՝ կավե թոնիրով, գլխավոր մուտքը, կամարները, խորաններ, քնելու խորշեր, դիտակետեր: Ժայռի տակով հազիվ մի նշմարելի կածան գնում հասնում էր աղբյուրին: Քիչ հեռու այգին էր ընկույզի ու սալորի վայրենացած ծառերով: Սենյակներից մեկը կիսախավար էր: Նա մեզ հուշում էր, թե ինչպես է փորվել խուցը, նախ մեծ հատիչը հսկայական մուրճով թեք մեխել են ժայռի մեջ, հետո կողքից նրան հարվածելով պոկել մի մեծ բեկոր ու անցել հաջորդին: Անհրաժեշտ ծավալը ազատելուց հետո, ձեռքի փոքր հատիչի մանրիկ հատվածներով հղկել են պատը: Երևի այդպես է փորվել նաև Գե-

ղարդի վանքը: Հիշեցինք, թե հիւ րեսկցի մի պառավ տատիկ ինչ էր պատմում քարանձավ փորելու մասին. «Մեր գյուղում ամենաուժեղ տղամարդը նա էր, ով օրը չորս քթոցի չափ քարանձավ էր փորում»: Պարզվում է, որ ժամանակին նույնիսկ մարդու ուժն են «քարանձավային» միավորներով չափել:

Գեղարդի ձորում մոմ ծախողների պատմած ավանդություններին եթե հավատանք, Մխիթար Այրիվանեցին ապրել է միաժամանակ բոլոր խցերում ու քարայրերում: Ավանդությունն ավանդություն, բայց մի քարանձավում իսկապես նա ապրել է: Վանք տանող խճուղուց երևում է դրա նեղ պատուհանը ձորի ձախակողմյան ժայռերի մեջ, մի փոքրիկ, անշուք անցք: Այստեղ պատի մեջ փորվել է մի երկար միջանցք, որն ավարտվում է քարե նստարան ունեցող արևոտ պատշգամբով: Մյուս պատի մեջ փորվել է աղոթքի խուց և ննջարան: Սակայն ամենակարևորը հավանաբար եղել է մեծ, ուղղանկյուն սենյակը, որից պահպանվել է միայն մի պատը՝ գրքերի համար փորած դարակներով: Սա, հավանաբար, եղել է նրա աշխատասենյակը, որտեղ գրել է իր գործերը, այդ թվում նաև՝ նշանավոր «Ժառընտիրը»:

Մենք նայում էինք Այրիվանեցու անձավին ու զարմանում.

— Ա՜յ մարդ, դու նշանավոր քարտաշ ես եղել, ինչո՞ւ այդ մի շնորհքիդ մասին ոչ ոք չգիտի:

Անձավի հղկած պատերից մեկի վրա քարտաշ-գիտնականը փորագրել է. «Ես բազմամեղավոր տեր Մխիթար վարդապետս շինեցի այս անապատը և անվանեցի Ժամատուն և, անոթի, աղոթքով, բնակվեցի այստեղ: Ընթերցման և աստվածային գործերի համար: Բոլորին աղաչում եմ աղոթքների մեջ օրհնել մեզ, Պռոշ իշխանին և նրա զավակներին: Թվական 1289»:

Այրիվանեցին մահացել է մոտ յոթանասուն տարեկան հասակում՝ այս արձանագրությունը փորագրելուց մի քանի տարի անց:

Այրիվանեցու քարայրը վերջինն էր Գեղարդ։։ձորում մեր հետազոտածներից, իսկ ընդհանրապես այնտեղ կատարած մեր որոնումների արդյունքը եղավ մոտ իննսուն սենյակներից բաղկացած անմատչելի անձավային համալիրների հայտնաբերումը:

# ԱՐՏԻՍՏԸ

ՏԱՏՅԱՆԱ ՊՈԼՅԱԿՈՎԱ

Երբ իմացանք, որ մեզ հյուր են եկել շեֆ սահմանապահները և իրենց հետ գամփռ են բերել, ամբողջ դասարանով ուրախությունից որոտագին աղաղակեցինք: Ես էլ էի «ուռա՜» գոչում իմ նստարանի ընկեր Վովկա Պստլիկի հետ:

Ծիծաղելի ազգանուն է, չէ՞: Եվ իսկապես Վովան մեր դասարանի ամենափոքրն է, ինձնից համարյա մի գլուխ ցածր: Նա հետը միշտ գիրք է ունենում: Մենք դասամիջոցին բոլորս բակ ենք թռչում, իսկ նրան դասարանից ոչնչով դուրս չես հրապուրի: Պայուսակից կհանի «Ռոբինզոն Կրուզոն» և մինչև հաջորդ դասի սկիզբը կկարդա: Ահա թե ինչո։ զարմացա, երբ Վովան նույնպես ուրախացավ: Կարծում էի գրքերից բացի նրան ոչինչ չի հետաքրքրում:

Ուսուցչուհին՝ Նոնա Ֆեոդորովնան, կարգադրեց չաղմկել.

— Այսօր վերջին դասը բացօթյա ենք անելու,— հայտարարեց նա:

Դպրոցի բակում մեզ մոտեցան երկու սահմանապահ, մի խոշոր գորշ գամփռի հետ:

— Բարև՛ ձեզ, երեխանե՛ր: Եկե՛ք ծանոթանանք,— ասաց ուսադիրների վրա երեք ոսկե ժապավեն կրող սահմանապահը:— Ես սերժանտ Սաբիրովն եմ, սա էլ իմ օգնական, շարքային Սինիչկինն է: Իսկ այս գեղեցիկի անունը Արտիստ է, — նա ցույց տվեց շանը:— Ապա՛, ներկայացի՛ր:

Արտիստը դունչը վեր ցցեց և երկու անգամ հաֆ արեց. մենք ծիծաղեցինք: Հիանալի ներկայացավ, կարծես վանկերով արտասանեց՝ Ար-տիստ:

Բայց հրահանգիչը լուրջ էր.

— Արտիստը իր անունը հենց այնպես չի ստացել: Իր գործում նա իսկապես արտիստ է, այն էլ՝ վաստակավոր: Նա սահմանի վրա գերազանց ծառայելու համար բավականին շատ պարգևների է արժանացել: Մենք դրանք հետներս չենք բերել, իմ բարեկամը մեծարանքներ չի սիրում... Այժմ կտեսնեք, թե ինչպես է սահմանապահ շունը հետքով գտնում և բռնում սահմանը խախտողին: «Խախտողը» կլինի իմ օգնականը:

Շարքային Սինիչկինը մեզ ուրախ աչքով արեց և ոտքը կամաց դրեց ծաղկաթմբի եզրին, ապա արագ հեռացավ և թաքնվեց թփերում:

— Մինչև «Խախտողը» հետքերը խառնի,— ասաց հրահանգիչը,— տեսնեք, թե ինչ հրամաններ է կատարում Արտիստը:

Կեցցե՛ Արտիստը, ոչ մի անգամ չսխալվեց: Օրինակ՝ հրահանգիչն ասաց. «պառկե՛լ», շունը պառկեց և գլուխը դրեց առջևի թաթերի արանքը: «Սողա՛», ասաց, և նա սողաց, «կանգնի՛ր», ոտքի թռավ զսպանակի պես, «ձա՛յն»— հաչեց: Պարզվեց, որ հրամաններ կարելի է տալ ժեստերով, ամենը կատարեց ճշտությամբ:

Ապա հրահանգիչը նայեց ժամացույցին և ասաց.

— Ժամանակն է: Դե՛ աշխատիր, Արտի՛ստ:

Շունը ուղղակի պարեց անհամբերությունից: Սերժանտը շան վզնոցին հագցրեց փոկը, մոտեցրեց ծաղկաթմբին, որի վրա «Խախտողի» ոտքի հետքը կար:

— Արտիստ, հե՛տք, փնտրի՛ր: Հե՛տք, հե՛տք:

Արտիստը հետքը հոտոտեց և թափով նետվեց շարքային Սինիչկինի գնացած ուղղությամբ: Սերժանտին վզափոկով իր ետևից տարավ: Նոր էին անհետացել թփերի ետևում, երբ մյուս կողմից դպրոցի բակ մտավ «Խախտողը»:

— Դե՛,— ասաց,— հիմա նրանք շատ պիտի վազվզեն: Ես ոչ միայն դպրոցի շուրջը պտտվեցի, այլև փողոցներով անցա:

Նա մեջքի ճանապարհորդական պայուսակից հանեց փորձնական մգդակած գլխանոցով թիկնոցը և սկսեց հագնել:

— Ի՞նչ եք կարծում, երեխանե՛ր, Արտիստը կկարողանա՞ առաջադրանքը կատարել,— հարցրեց Նոնա Ֆեոդորովնան:

— Կկարողանա՜,— գոռացինք միաբերան:

— Չի՛ կարողանա,— ասաց Սաշա Մախանկովը:

— Ինչո՞ւ ես այդպես կարծում,— զարմացավ ուսուցչուհին:

— Որովհետև այդ փողոցներով «Խախտողից» հետո այնքան մարդ է անցել, որ նրա հետքերը արդեն տրորել են:

— Տրամաբանական է,— ասաց Նոնա Ֆեոդորովնան:

Հենց այստեղ էր, որ Վովա Պտլիկը նորից զարմացրեց ինձ՝ ավտոմատի պես ճարճատեց, հուզմունքից նույնիսկ կակազելով.

— Բ-բոլորովին էլ ո-ոչ: Ես կարդացել եմ, որ...

Բայց մենք չհասցրինք իմանալ, թե ինչ է կարդացել Վովան, որովհետև թփերի ետևից, որտեղից հենց նոր երևացել էր «Խախտողը», դուրս թռավ Արտիստը: Նրա ետևից հազիվ էր հասնում սերժանտ Սաբիրովը: Շարքային Սինիչկինը արագ սկսեց վազել, ընթացքում կապելով գլխանոցը: Հրահանգիչը կանգնեցրեց շանը և վզափոկը հանեց վզնոցից:

Իրեն ազատ զգալով, Արտիստը մի քանի ոստյունով հասավ «Խախտողին» և թռավ ուսերին: «Խախտողը» ընկավ: Գամփռը ատամները մխրճեց նրա գլխանոցի մեջ և սկսեց ուժեղ թափահարել խեղճ Սինիչկինին ու սեղմել գետնին, մինչև որ նա անշարժացավ: Այդժամ Արտիստը նրա վրա դրեց իր առջևի հզոր թաթերը և հաղթական հաչեց: Հրահանգիչը վազեց շան մոտ և վզափոկը վզին անցկացրեց:

— Լա՛վ է, Արտի՛ստ, լա՛վ է,— արտասանեց նա ուժեղ շեշտադրությամբ: Հետո թաշկինակը հանեց, քրտինքով ողողված ճակատը սրբեց, Արտիստին «Խախտողից» հեռու տարավ:

Շարքային Սինիչկինը վեր կացավ ասֆալտի վրայից, հանեց փորձնական թիկնոցը, թափ տվեց: Ա՜յ թե սարսափ ապրեց երևի,— մտածեցի ես,— Արտիստի ատամները «ո՜ւ-ո՜ւ»: Իսկ Սինիչկինին կարծես ոչինչ էլ չէր պատահել, վերնազգեստը ուղղեց, գլխարկը դրեց ու քաղցր ժպտաց:

— Ուրիշ էլ ի՞նչ կարող է անել ձեր Արտիստը,— հարցրեց Վովան:

— Շատ բան,— պատասխանեց սերժանտը:— Օրինակ՝ գողացված իրեր և դրանց գողացողին է հայտնաբերում:

— Իսկ դուք այդ է՞լ ցույց կտաք մեզ,— նորից հարցրեց Վովան:

— Իհարկե:

Ոչ ոքի մտքով չէր անցնում այն, ինչ կատարվեց հետո: Վիկա Ռյաբուշկինայի աչքերից հանկարծ արցունքներ գլորվեցին, և նա բարակ տզտզաց.

— Ո՛չ, պետք չէ, խնդրում եմ, պետք չէ:

— Ի՞նչը պետք չէ,— զարմացավ սերժանտը:

— Վի՛կա, քեզ ի՞նչ պատահեց,— անհանգստացավ Նոնա Ֆեոդորովնան:

— Խնդրում եմ... պետք չէ փնտրել... — հեծկլտաց Վիկան:— Ես էլ չեմ անի՜-ի՜...

Նա բացեց իր պայուսակը և «Արկածային գրադարան» շարքից մի գիրք հանեց:

— «Աղամանդ հափշտակողնե՜րը». — ախ քաշեցի ես: Այդ գիրքը Պստլիկը արտադասարանական ընթերցանության համար էր բերել:

— Ների՛ր ինձ, Վո՛վա, որ առանց քեզ հարցնելու վերցրել եմ,— ասաց Վիկան: Եվ հազիվ լսելի ավելացրեց.— Կարդալու համար:

— Թռցրել ես, հա՞,— խայթեց Սաշա Մախանկովը:

Վիկան այնպես ուժգին լաց եղավ, որ խոպոպիկները գլխի վրա ցնցվեցին:

— Խոսքերդ ընտրիր՝ հետո՛ խոսիր. — Սաշային դիմեց վրդովված Վովա Պըստլիկը:— Միևնույն է՝ նա կասեր, այնպես չէ՞, Վի՛կա:

— Ճիշտն ասած, ես շանից վախեցա. — խոստովանեց Վիկան,— բայց ես առանց դրա էլ...

— Տեսնո՞ւմ եք, երեխանե՛ր,— ժպտաց Նոնա Ֆեոդորովնան,— պարզվում է, որ սահմանապահ շունը ոչ միայն սահմանախախտողին է բռնում, այլև ոմանց ազնըվություն է սովորեցնում: Կեցցե՛ս, Արտի՛ստ: Շնորհակալությո՜ւն, ընկե՛ր սահմանապահներ:

Մենք ամբողջ դասարանով ուսուցչուհու հետ միասին ծափահարում էինք, իմ ձեռքի ափերը նույնիսկ ցավեցին:

— Գիտե՞ս,— տուն գնալիս ասաց Վովան, —հիմա ես երազում եմ իսկական սահմանապահ շուն դաստիարակել: Հայրս ինձ շան ձագ է նվիրելու: Ուզո՞ւմ ես միասին դաստիարակենք:

Մեր պայմանը մենք կնքեցինք ձեռքի, ուժեղ, տղամարդկային սեղմումով:

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ





Մի գարնան ես ու մեր Սպարտակը գնացինք Ճղած քարի սարը՝ ավելուկ քաղելու: Ճղած քարի սարում ավելուկը փափուկ է, ճյութալի ու շատ համով: Սպարտակը իր «Վիլիսը» քշեց, գնացինք:

Ջորի անտառները վերջացան ու սկսվեց մի կանաչ-կապույտ աշխարհ: Ներքևը՝ կանաչ, վերևը՝ կապույտ: Հասանք Ճղած քարի գլուխը, տեսանք ավելուկն այստեղ լավ բարձրացել է, խլշել, ո՜նց է ծափ ու ծփանք անում:

Քաղեցինք որքան պետք էր, խոթեցինք «Վիլիսի» մեջ, ետ դառանք:

Նոր էինք հասել անտառին, մեկ էլ տեսնենք խոտերի մեջ մի արջի քոթոթ է թռվռում, թավալ տալիս, խնդմնդում իր համար: Հրաշք բան էր: Նախ վախեցանք՝ մերը հո մոտը չի՞: Ձեն-ձուն արինք, բայց չէ, մերը մոտիկ չէ: Էս Սպարտակս, թե՝ Գառնիկ, եկ քոթոթը տանենք:

Խելք էր, փչեց գլխներիս: Իջանք «Վիլիսից», մոտեցանք քոթոթին: Սա չխրտնեց. ավելի խնդմնդաց: Երևի մարդ արարածի առաջին անգամն էր տեսնում: Դե, ինքը հազիվ երեք ամսական լիներ: Սպարտակը գրկեց նրան: Հենց որ մոտեցանք «Վիլիսին», քոթոթն իրարով ընկավ, մռռռաց, հեծեծաց ու թաթերը դեմ արեց «Վիլիսի» դռնակին, չուզեց՝ սպանենք էլ, ներս չեմ մտնի: Այնպես էր դժժում, այնպես համառում՝ ես եմ ու ես, չեմ ուզում, չեմ ուզում: Մենք նրա թաթիկները ծալեցինք, ներս մտցրինք:

Գնացինք: Նստել ենք, Սպարտակը ղեկի մոտ, ես՝ կողքին, քոթոթը մեր մեջտեղը: Գնում ենք... Ամա էս քոթոթը մի՜ մըղկըտոց է գցել, մի՜ լաց է լինում, ոնց որ չորեքթաթ տվող երեխա: Զարմանք բան՝ արցունքներ են, որ գլոր-գլոր թափվում են աչքերից, թացացնում մռութը: Լացի միջից մերթ ինձ է նայում, մերթ Սպարտակին և կարծես մեզնից օգնություն է խնդրում, որ իրեն ազատենք:

Սիրտս մղկտաց: Էլ չհամբերեցի, կանգնեցի, ասի՝ Սպարտակ, դու լինես՝ քո մոր կաթը, մեր արածը անխիղճ բան է, եկ քոթոթը վեր դնենք: Սա թե՝ ի՞նչ ես, է՜, կնիկ դառել, քոթոթ է էլի՜, մի քիչ էլ կվնգստա ու կսսկվի, տանենք մեր երեխեքին ուրախացնենք:

Ճարունակեցինք իջնել դեպի տուն: Բայց աշխարհը մթնել էր գլխիս: Էս մեր քոթոթն ուղղակի սպանում էր ինձ իր մըղկըտոցով: Բա արցունքները՝ խոշոր, պարզ, գլորվում, ո՜նց են գլորվում... Կարծես աղաչում է, որ իրեն մենք գանք: Հա՛,




Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

հա՛, երեխի պես աղաչում է՝ մարդիկ, ինձ բաց թողեք, չեմ ուզում, չեմ ուզում…

Էլ չհամբերեցի, ասի՝ Սպարտակ տղա, մենք մարդասպան ենք դառնում: Ախր մարդ ենք, չէ՞, ինչու՞ չենք նեղն ընկածին օգնում: Եկ քոթոթին բաց թողնենք:

Սպարտակը լուռ է: Այս անգամ գոռացի՝ հասկացիր, Սպարտակ, էս ավելուկը մեզ հարամ կլինի, այ Սպարտակ:

Մոտենում էինք մեծ ճանապարհին: Հանկարծ Սպարտակը ավտոն թափով ետ շրջեց ու մեր եկած տեղերով էնպես քշեց, որ փափախս գլխիցս ընկավ:

Ինչ գլուխ ցավացնեմ, մեկ թե երկու ժամ հետո հասանք այնտեղ, որտեղից վերցրել էինք քոթոթը: Սպարտակը քոթոթին գրկեց, խնամքով դրեց կանաչ խոտի մեջ ու ետ եկավ:

Հիմա էլ թափով ետ ենք դառնում: Մի քիչ էինք հեռացել քոթոթից, երբ լսեցինք նրա ուրախ ձայնը, ետ նայեցինք: Մայր արջը վերևից վազում էր դեպի իր բալիկը, քոթոթն էլ վազում էր նրան ընդառաջ:

Ես ու Սպարտակը թեթևացած հոգոց հանեցինք:

# Ի՞ՆՉ ՊԱՏԿԵՐ ՈՒՆԻ ՁԵՐ ՇՔԱՄՈՒՏՔԸ

Մեր շքամուտքը ներկեցին: Պատերը՝ նուրբ-կանաչ, հատակի եզրագարդերը՝ շագանակագույն: Նույն ներկով էլ ներկեցին դռները: Առաստաղները՝ սպիտակ-սպիտակ են, ներկը չեն խնայել:

Ինձ հյուր եկան ծանոթներս: Նրանք դժվարությամբ են տունը գտել, առաջ այն թվում էր հին, մռայլ, իսկ այժմ ուրախ է ինչպես գարնանային օրը:

Այո՛, առաջ մեր շքամուտքը կեղտոտ էր: Սանդղահարթակի պատուհանի ապակիները կոտրված էին, սպիտակ պատը կեղտոտ ձեռքերից սևացած, կարծես տեսնում ես նրան, ով ատիճաններով վազել է ներքև ու կեղտոտ մատը սպիտակ պատի վրայից քաշելով, մոխրագույն հետք է թողել: Բայց սա ի՞նչ է որ… եթե տեսնեք իմ ընկերների տունը…

Մուտքի դռան ապակիները կոտրված են, սրտացավ մեկը անցքերը ստվարաթղթով փակել է, որպեսզի չփչի: Վերելակ մտնելը սարսափելի է: Ծցիկի ամբողջովին պլոկված պատերի վրա ստորագրել են միկրոշրջանի համարյա բոլոր տղաները, ինչ անուն ասես որ չկա:

Ես ճանաչում էի մի հինգերորդ դասարանցու, որը իր երեք տարեկան քրոջը լացացրեց, երբ, իբրև պատիժ, անկյուն կանգնած ժամանակ քույրը նոր պաստառները փորփրել էր: Մինչդեռ ինքը գրչահատ դանակի սրությունը փորձում էր շքամուտքի բազրիքների վրա: Ես կարծում եմ, կարելի է տասնյակ այսպիսի օրինակներ բերել, ցույց տալու համար, թե ինչպես անբարեխիղճ մարդիկ իրենցը պահպանում են, իսկ հասարակականը փչացնում:

Բայց և մյուս կողմից հիշենք, թե ինչ մաքուր է մետրոն: Մեզանից ոչ ոք չի կարող ասել, թե մետրոն իմն է, սեփականը, և սակայն ոչ մեկի մտքով չի անցնի մետրոյում լամպեր կոտրել կամ դանակով քերծել պատերը: Նշանակում է՝ հարցն այստեղ միայն սեփականատիրական զգացումը չէ:

Մենք անհարմար ենք զգում անկարգություն անել մարդկանց ներկայությամբ, մետրոյում, մարդկանց աչքի առաջ: Լավ կլինեն, որ մեր խիղճը մեզ չլքեր նաև շքամուտքում, մենակ լինելիս, և ամենուր:

Մ. Մ.

ՀՈՎԻԿ
ՎԱՐԴՈՒՄՅԱՆ



# ՀԱՂԹԱՆԱԿ

Այն ժամանակ գետի ջուրը մաքուր էր և մենք դասերից հետո վազում էինք լողանալու: Բոլորս լողալ գիտեինք՝ ձկների նման գետի մեջ էինք մեծացել:

Միայն Տիգրանը չէր լողանում: Նրա մեջ վախ կար ջրի նկատմամբ, հազիվ մինչև գոտկատեղը խորանալով, վախեցած ետ էր դառնում, պառկում գետափի ավազներին ու նախանձով նայում մեր խաղին:

Մենք հաճախ էինք ծաղրում Տիգրանի վախկոտությունը: Եվ նա մեր ամենօրյա ծաղրուծանակից խուսափելու համար այլևս չէր գալիս հետներս լողալու, գնում էր հեռու, առանձին տեղ, որպեսզի չտեսնենք: Կամաց-կամաց բոլորից հեռանում էր, դառնում ինքնամփոփ: Ֆուտբոլ խաղալու ժամանակ ոչ ոք չէր ցանկանում նրան իր թիմի մեջ վերցնել, չնայած այնքան էլ վատ չէր խաղում:

Ես լավ լողորդ էի: Հասակակից տղաները ձգտում էին ինձ հետ ընկերություն անել: Մեծահասակները սիրում էին ինձ, որովհետև ֆուտբոլի մրցումների ժամանակ գոլ էի խփում: Բոլորի նման Տիգրանն էլ էր ցանկանում ընկերություն անել հետս, բայց ես չէի նկատում նրան՝ ինձ շատ ուժեղ էի զգում:

Սակայն մեր կյանքում մի օր մեծ փոփոխություն կատարվեց: Մեր հարևանի տղան բանակից զորացրվելով, հետը բռնցքամարտի երկու զույգ ձեռնոց էր բերել: Կիրակի օրը բոլորը եկան տեսնելու:

— Մո՛տ արի,— ժպտալով կանչեց մեր հարևանի տղան:

Ես առանց տատանվելու մոտեցա ու հագա ձեռնոցները: Տղաները հիացմունքի բացականչություններով շրջապատեցին ինձ: Տիգրանն էլ էր եկել, մի քիչ հեռու, առանձին կանգնած մեզ էր նայում:



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Է՞լ ով է ուզում,— ասաց մեր հարևանի տղան:

Ոչ ոք չէր համարձակվում՝ լավ լողորդի ու գոլ խփողի իմ հեղինակությունը խանգարում էր:

— Դու կուզե՞ս,— ժպտալով Տիգրանին դիմեց մեր հարևանի տղան:

Տիգրանը հեռու կանգնած՝ տխուր նայում էր: Մեր հարևանի տղան մոտեցավ, շոյեց գլուխը.

— Վախենո՞ւմ ես:
— Եսիմ...— ամաչելով նրան նայեց Տիգրանը:
— Մի՛ վախեցիր,— մեր հարևանի տղան ձեռնոցները հագցրեց, կապիչները կապեց:
Բոլորը հավաքվեցին մեր շուրջը:
— Հենց հաշվեմ մեկ, երկու՝ սկսե՛ք,— հարևանի տղան փորձառու դատավորի նման կանգնեց մեր միջև:
Տիգրանը սկզբում պաշտպանվում էր: Մի քանի հարված հասցրի դեմքին: Անվճռականությունն ու տարիների կաշկանդվածությունը չէին ազատում նրա ձեռքերը: Բոլորի համակրանքն իմ կողմն էր:
— Դե՜... դե՜... ինչի՞ ես սպասում,— գոռում էին տղաները,— հասցրո՛ւ մռութին և վերջ:
Սակայն Տիգրանը չէր հանձնվում, ընդհակառակը՝ աստիճանաբար տիրապետեց իրեն, անցավ գրոհի: Ես նայում էի նրա դեմքին, աշխատելով ուղիղ նշանառությամբ հարվածել, բայց նա ամեն անգամ խույս էր տալիս:
Գնալով հետաքրքրասերների թիվը շատացավ: Երեխաների ու մեծահասակների մի ստվար խումբ էր հավաքվել, մեզ առել շրջանի մեջ: Հոգնել էի, իսկ մեր հարևանի տղան փոխանակ ընդհատելու, ավելի էր տարվում խաղով ու բորբոքվում: Որոշ ժամանակից հետո զգացի, որ Տիգրանը հաղթում է ինձ: Մի հարված ստացա դեմքիս: Աչքիս տակը մրմռում էր: Ավելի թուլացա, քիչ էր մնում զինաթափ լինեի՝ այնքան անսպասելի էր: Մի հարված էլ կպավ ծնոտիս: Շրջանից արդեն քաջալերանքի խոսքեր էին ուղղում Տիգրանին: Վիրավորանքի ալիքն անցավ գլխիցս մինչև ոտքերս: Ձեռքերս հազիվ էի բարձրացնում, սակայն մեծ անպատվություն կլիներ հանձնվելը՝ տղաները շունչները պահած հետևում էին:
...Սակայն Տիգրանն արդեն հաղթել էր: Նա հիմա պարզապես ծեծում էր ինձ: Այդ պահին նրա աչքերում անհաղթահարելի ատելություն կար, որը կուտակվել էր տարիների ընթացքում, գետափին կրած ծաղրուծանակից:
Սկսեցի նահանջել: Ավելի շուտ այդ ոչ թե նահանջ, այլ՝ խայտառակ փախուստ էր: Մի կերպ պաշտպանվելով ետ-ետ էի փախչում, իսկ նա, դեմքիս հարվածներ հասցնելով, հետապնդում էր: Մարդիկ շրջապատած, առած շրջանի մեջ, մեզ հետ շարժվում էին տեղից տեղ և աղմըկում: Ոչ ոք չէր միջամտում, ընդհակառակը՝ հիացական բացականչություններով ոգևորում էին:
Անզորության զգացումից լացս գալիս էր, բայց խայտառակվելու վտանգն ավելի մեծ էր և մի կերպ պահում էի ինձ, որպեսզի չբռնեմ գլուխս ու հեկեկամ:
Եվ զարմանալի բան կատարվեց: Տիգրանը հանկարծ դադարեց հարվածել, կանգ առավ, հանեց ձեռնոցներն ու բարձրաձայն լաց եղավ...
Բոլորն անակնկալի եկած լուռ նայում էին հեռացող Տիգրանի ետևից:
— Է՜յ, տղա՛, ինչո՞ւ ես լալիս,— կանչեց մի մեծահասակ,— չէ՞ որ դո՛ւ հաղթեցիր:
— Դմբո՛,— նրան պատասխանեց մի ուրիշը,— գիտես հե՞շտ բան է անպաշտպան մարդուն ծեծելը: Դժվար է, ամեն մարդ չի կարող... Նա պարզապես լավ տղա է:
Բոլորն աստիճանաբար ցրվեցին:
— Կուզե՞ս ես նրան մի լավ ծեծեմ,— ասաց մեր հարևանի տղան:
Առանց պատասխանելու նրան հանձնեցի ձեռնոցներն ու հեռացա:
Երեկոյան, երբ գետի ջուրը տաքացավ, նորից գնացինք լողալու: Ես ինձ պարտված զորավարի նման էի զգում: Առանց գժությունների, առանց ճվճվոցի լողացանք, պառկեցինք տաք ավազներին: Ոչ ոք չէր խոսում: Հանկարծ ճանապարհին երևաց Տիգրանը՝ գալիս էր լողալու:
— Հիմա կծեծենք... Հո չե՞նք ծեծի,— ասաց Աղվես մականունով տղան:
Տիգրանն ամեն անգամվա նման հեռու չգնաց: Եկավ, լռությամբ հանվեց և պառկեց կողքիս:
Աչքերի մեջ ո՛չ ատելություն կար, ո՛չ վախ: Հասկացա, որ Տիգրանը պարզապես շատ լավ տղա է, բայց ոչ մեկս նրան կարգին չենք ճանաչել: Իսկ լողալը ոչինչ, մարդ միշտ էլ կարող է սովորել:
— Դե լա՜վ,— ասացի ես,— ինչ եղավ՝ եղավ: Պարզապես դու ինձ հաղթեցիր...— Եվ ձեռքս պարզեցի:
— Ինչ եղավ՝ եղավ,— Տիգրանն ուրախությամբ սեղմեց պարզած ձեռքս:
Բոլորն ուրախացան, հավաքվեցին մեր շուրջը:
— Ջո՛ւրը մտնենք,— ասացի և Տիգրանի հետ ձեռք-ձեռքի տված գնացինք դեպի գետը:



# ԱՎԱՐԱՅՐԻ ԴԱՇՏՈՒՄ

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Հրաշք երազ տեսա.
Իմ դեմ դաշտ էր մի լայն,
Եվ դաշտից ինձ հասավ
Աղմուկ ահեղաձայն:

Ելա և քիչ մնաց
Հուզմունքը ինձ այրի.
Դաշտն ինձ ծանոթ թվաց՝
Դաշտն էր Ավարայրի:

Դաշտն էր Ավարայրի՝
Նույն մեծ կռվի պահին..
Փղերն էին վայրի
Գալիս առանց ահի:

Քաջ Վարդանը առած
Հերոսների մի բուռ,
Խոյանում էր առաջ
Ըմբոստ, ահասարսուռ:

Ինքն էլ փիղ էր ասես
Փղերի դեմ հզոր,
Նա և՛ զորավար էր,
Ե՛վ զինվոր էր, և՛ զորք:

Ես ձեր թոռն եմ հպարտ,
Թոռն եմ քաջ Վարդանի,
Ես զավակն եմ անպարտ
Մեր նոր Հայաստանի:

Ի՞նչ մահ, էլ ի՞նչ փղեր,
Երբ ձեր կողքին ես կամ,
Երբ կռվում են մեկտեղ
Ներկան և ապագան:—

Հետո ես լռեցի,
Ավտոմատս խոսեց...
Մատյան գնդի վրա
Կրակ ու բոց հոսեց:

Եվ ընկրկեց մեկեն
Գոռ ոսոխը ահով,
Խելակորույս փախավ
Եկած ճանապարհով...

Իրենց պաշտած հուրը
Հալածում էր իրենց,
Էլ կարո՞ղ էր լինել
Աղետ՝ ավելի մեծ...

Սիրտս ծառս էր լինում
Եվ ուզում էր կրկին,
Որ ես գնամ, հասնեմ
Խառնիճաղանջ զորքին:

Հնձեմ ավտոմատով
Ու վրեժս առնեմ,
Սրով եկածներին
Հող ու քարին խառնեմ:

Բայց հիշեցի Դավթին
Ու պատգամը նրա...
Կանչեցի՝ էլ չգա՜ք
Սրով դուք մեզ վրա:

Զուր են ձեր ջանքերը.
Խորն է արմատը մեր,
Ո՛չ դուք պիտի շահեք.
Ո՛չ հաջորդները ձեր:

Ճշմարիտ եմ ասում,
Հավատացե՛ք դուք ինձ,
Ձեզ հետ խոսում եմ ես
Հեռու ապագայից:



Բայց... սպասե՛ք, կարծես
Օղակում են նրան,
Մի ավտոմատ առած,
Հասնեմ ես օգնության:

Հասա և ի՞նչ տեսնեմ.
Արյու՜ն, արյան հեղեղ...
Եվ մեր զորքը, ավա՜ղ,
Ցան ու ցիր էր եղել:

Միայն այս ու այնտեղ
Դեռ կռիվ էր գնում.
Կանանց գունդն էր աճեղ
Մահով անմահանում:

Եվ Վարդանն էր խոցված,
Դեռ մարտնչում համառ,
Վառվող մի ջահ էր նա՝
Գիշերվա մեջ խավար:

... Էլ հապաղել պետք չէր.
Ավտոմատս առած,
Սկսեցի կանչել
Ու խոյացա առաջ:

— Դարձե՛ք,— ճչացի ես,
Հայե՛ր, ուշքի՛ եկեք,
Քսաներորդ դարից
Օգնության եմ եկել:

... Զորապետը պարսիկ՝
Հեռու բլրին կանգնած,
Աչքը պատերազմին,
Գույնը գցեց հանկարծ:

Գոռաց՝ այս ի՞նչ եղավ,
Այս ի՞նչ անեծք էր մեծ.
Կռվի ընթացքն, ավա՜ղ,
Ի՞նչ հրաշքով փոխվեց:

Վարդանը՝ մի կղզի,
Ծով էր իմ զորքը, ծո՜վ,
Ո՞վ է տեսել կղզի
Այսպես առաջնացող:

Վարդանը՝ մի կաղնի,
Զորքն իմ՝ անծայր անտառ,
Բայց կանգուն է կաղնին,
Շուրջը և ոչ մի ծառ:

Անտառս ո՞վ հատեց,
Ծովս դարձրեց ցամաք,
Ինձ պատասխա՜ն տվեք,
Կրտսերնե՞ր ու ավա՜գ:

Լսում էի հեռվից
Ու ծիծաղս էր գալիս,
Բայց իմ խիղճը ներսից
Լալիս էր ու լալիս:

Մինչ ես խրատ էի
Կարդում որոտալից,
Ցրված զորքը հայոց
Շրջապատել էր ինձ:

Վարդանն առաջ եկավ,
— Ապրե՜ս,— ասաց,— տղա՛ս,
Քո այդ զենքից էլ շատ
Խոսքդ ազդեց վրաս:

Հիմա արդեն հանգիստ
Կարող եմ և՛ մեռնել,
Երբ այս մոխիրներից
Քեզպեսներն են հառնել:

Ապրե՛ք խաղաղությամբ
Ու շատացրեք բարին
Եվ ձեր ոտքը երբեք
Թող որ չառնի քարին:

Եվ ինչպես այս պահին
Ձեռք մեկնեցիր դու մեզ,
Թող զորավիգ լինեն
Գալիք դարերն էլ ձեզ...—

... Ժպիտ փռվեց դաշտին
Ու ծովացավ ծալ-ծալ...
Ես արթնացա քնից,
Առավոտ էր պայծառ:




Ճամշադինի շրջանի Չինչին գյուղի կոլտնտեսության վարչությունը 1976 թվին պատանի բնասերներին հատկացրեց 2000 քառակուսի մետր հողատարածություն։ Այդ հողն անտառտնտեսության աշխատողների օգնությամբ մշակվեց, վերածվեց դպրոցական անտառպետության։

Լեռնաշխարհի բնությունը, բուսական ու կենդանական աշխարհը շատ էին հետաքրքրում պատանի անտառապահներին։ Բնագիտական արշավների ժամանակ նրանք հաշվառեցին շրջանի տարածքում եղած ծառատեսակները, պատրաստեցին հերբարիումներ։ Անտառպետության մի հատվածում գտնվում է բուսաբանական այգին, որտեղ աճում են 264 վայրի ծառատեսակներ ու թփեր։ Ամեն գարնան ու աշնան այգին հարստանում է նոր տնկիներով։ Անցած տարի տնկվել են ևս 68 ծառատեսակներ, որոնք իրենց հերթին յուրօրինակ գեղեցկություն են տալիս շրջապատին։

Անտառպետությունից քիչ հեռու, գետակի ափին, տնկարանն է։ Այստեղ են աճեցնում տնկիներ, որոնք հետո տեղափոխում են անտառպետություն և այլ վայրեր։

Դպրոցականները մասնակցում են ծառապատվաստման աշխատանքներին, անտառները մաքրում չորուկներից, ծերատում ճյուղերը, իսկ ամռանն աչալրջորեն հսկում են գյուղամերձ անտառակները։

Պատանի բնասերները ձմռանը կեր ու կուտ են տանում անտառի բնակիչներին, թռչնաբներ կախում ծառերի ճյուղերից։ Իսկ ամառային արձակուրդի օրերին աշխատում են հանրային դաշտերում, մասնակցում խոտհնձին, խոտհավաքին, կերի կուտակմանը։

Նրանք մի քանի անգամ մասնակցել են համամիութենական ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսին, արժանացել մեդալների ու պատվոգրերի։

Ի՞նչը չինչինցիներին դարձրեց հանրապետության առաջին դպրոցական անտառպետության ստեղծողները։ Հողի նկատմամբ ունեցած սերը։




**ԺԱՆԵՏ ՔԱՍՈՒՆԻ**
(բեյրութահայ գրող)

Շիրազը նորեկ էր:

Վարանոտ ու շփոթ քայլերով նա մտավ դասարան, բայց շուտով իր անվան պես սիրելի դարձավ:

Բոլոր ընկերները սիրեցին նրան: Սիրեցին առատ ու խիտ մազերի շուքի տակ հազիվ երևացող իր մանր աչքերը, որոնք փայլում էին անհանգիստ ու հետաքրքիր: Սիրեցին իր խելացի պատասխանները, խաղերը, մանկական կռիվներն ու վեճերը, փոքր տարիքին անհամապատասխան իր հայրենասիրությունը, օգտակար լինելու իր պատրաստակամությունը:

Զբոսանքի չեղած, անձայն մոտենում է ուսուցչին.

— Ասա՛, Շիրա՛զ:,

— Ինչո՞վ կարող եմ օգտակար լինել. օրիո՛րդ:

Դասարանային աշխատանքների բաժանում կար այդ օրը առավոտյան: Պզտիկ, բայց պատասխանատու գործեր էին հանձնարարված աշակերտներին, օրինակ՝ գրատախտակը մաքրել, ցուցատախտակը շտկել, մաքրությանը հսկել, հերթապահել, ծաղիկները ջրել և այլն:

— Ի՛նձ էլ գործ հանձնարարեք, օրիո՛րդ:

— Շիրա՛զ, գործն արդեն բաժանեցինք: Քեզ հաջորդ ամսին կհանձնարարենք. երբ վերափոխենք պատասխանատուներին:

— Ես գործ եմ ուզում անել:

— Լա՛վ, Շիրա՛զ, երբ պետք լինի, կասեմ՝ կօգնես:

— Սիրով, շատ սիրով:

Շիրազը գոհացավ: Նա արթուն սպահակի պես պիտի հսկեր ու վազեր այնտեղ, ուր ուղարկեին: Ուստի, իր խնդրանքով, նա նստեց առջևի շարքի նստարաններից մեկին, դռան մոտ, որպեսզի կարողանար չուշացնել օգնությունը:

Եվ իրոք, Շիրազն ամբա՜ն, ամբա՜ն պատրաստ էր սավածն անելու, որ երբ մի անգամ ասացի.

— Շիրա՛զ, խնդրեմ, գնա՛ գրասենյակ...

Խոսքս չէի ավարտել, նա վազեց:

Քիչ հետո հևալով վերադարձավ ու հանցավոր ժպիտով, աչքերը գետին, ասաց.

— Օրիո՛րդ, քարտուղարուհին հարցրեց, թե ի՞նչ եք ուզում:

— Վա՜յ Շիրազ,— ծիծաղեցինք բոլորըս,— ինչո՞ւ գնացիր առանց հասկանալու:

Ամոթահար, նա աչքերը գետնից չկարողացավ բարձրացնել:

— Ներողությո՛ւն, օրիո՛րդ, ուզեցի ըշտապ կատարել ձեր հանձնարարությունը:

— Հոգ չէ՛, Շիրա՛զ, օգտակար լինելու պատրաստակամությունդ այնքան գնահատելի է, որ մենք արածիդ մեջ թերություն չենք տեսնում: Հիմա կարող ես գնալ և բերել գրավորի թղթերը:

— Այո՛, այո՛, հիմա կբերեմ, գիտեմ, թե ինչ պիտի բերեմ, գրավորի թղթերը:

Ու նա վազեց: Ի՜նչ գոհունակություն կար դեմքին և ի՜նչ հրճվանք վազքի մեջ:

Շիրա՜զ, իր անվան պես սիրելի:

**Բեյրութում լույս տեսնող «Արձագանք» ամսագրից**



# Մեր առաջին արշավը

Առավոտյան, դեռ մեկ ժամ առաջ, ուսապարկս առնելով, տանից դուրս եկա: Ինձ թվում էր անցորդները զարմացած ինձ էին նայում: Երևի նման էի ալպինիստի, որովհետև սպորտային հագուստով էի, ձեռքիս ձեռնափայտ կար, ուսիս՝ ուսապարկ: Ուրիշ ժամանակ կամաչեի այդպիսի տեսքով դուրս գալ:

Հասա դպրոց: Բոլորն էլ ինձ նման ժամանակից շուտ էին եկել: Բոլորի կյանքում էլ երևի սա խոշոր իրադարձություն էր:

Ընկեր Սարգսյանը մեզ դիմավորեց հերթական սրամտություններով: Շուտով ավտոբուսը եկավ և մենք մեկս մյուսին հերթ չտալով՝ բարձրացանք: Ահա և հասանք Գառնիի տաճարը: Այնտեղից պետք է ոտքով 15 կմ գնայինք ձորերի միջով: Հաջորդ օրը ավտոբուսը մեզ սպասելու էր պայմանավորված վայրում: Նոր էինք իջել ավտոբուսից, երբ մի ուժեղ ամպրոպ պայթեց, կայծակից տաճարը լուսավորվեց և անձրևը մեզ ոտքից-գլուխ թրջեց: Վազելով մտանք տաճարը: Ուսապարկերի ծանրությունից մեր ուսերը ցավում էին, բայց հետաքրքիր էր և ոչ մեկը չէր դժգոհում: Երկու ժամ անց, չնայած անձրևը դեռ չէր կտրվել, ճամփա ընկանք: Ճանապարհը թեք էր ու դժվար, իսկ ցեխաջուրը խանգարում էր քայլելուն: Անընդհատ սայթաքում էինք, բայց ոչ մեկը չէր դժգոհում: Եվ կարծես, այդ դժվարություններից մեր արշավն ավելի հետաքրքիր էր դառնում: Շուտով դուրս եկանք գետի մոտ, որի կողքին ուղիղ ճանապարհ էր ձգվում: Գետը անձրևից պղտորվել էր, ելել հունից: Այնպիսի սուր օդ էր, որ շնչելը և հաճելի էր, և դժվար: Գետը գտնվում էր երկու հսկա ժայռերի մեջ: Ժայռերից մեկից մենք էինք իջել: Ակամայից մտածում էի, թե ու՞ր էր մեր ֆիզկուլտուրայի ուսուցիչը ինձ տեսներ, նա սկզբում ինձ չէր երաշխավորել արշավի մեկնելու համար, ասելով, թե հարյուր մետր վազեմ՝ շունչս կփչեմ: Ուրախությունն ինձ ճարպիկ էր դարձրել: Մեր շուրջը լռություն էր: Միայն երբեմն-երբեմն մեր ծիծաղն էր արձագանքվում, ու երբեմն էլ լսվում էր ագռավի չոր կռինչը:

Մամռակալած ժայռերի վրա թռչունների բներ էին երևում: Շուտով հասանք այնպիսի տեղ, որ տղաներն անգամ դըժվարությամբ իջան, իսկ մենք՝ աղջիկներս, ուսապարկերը նրանց մոտ թողնելով, գնացինք ավելի հարմար ճանապարհ գտնելու: Մեր ուսապարկերը ծանր էին, տղաների ձեռքից պոկվելով՝ գլորվեցին ցած: Մեծ դժվարությամբ իջանք մի բացատ: Անհրաժեշտ էր վրաններ խփել: Գիշերվա խավարը և սպիտակ մշուշը իրար խառնված՝ կախվել էին ժայռերից: Եռուզեռ սկսվեց: Տղաները վրաններն էին խփում, մենք՝ աղջիկներս փայտ հավաքում, թե չէ առանց խարույկի գիշերը կսառչեինք: Դժվար էր անձրևից հետո չոր փայտ գտնելը: Մեր և ընկեր Սարգըսյանի ջանքերով վրանները կանգնեցին, և խարույկը սկսեց բոցկլտալ: Ընթրիքից հետո հանելով մեր թրջված ու ցեխոտված գուլպաները, ցրտից անզգայացած ոտքներս պահեցինք կրակի մոտ: Քամու ոռնոցը սուրալով տարածվում էր հեռվում: Այդ իրադրության մեջ պատմությունները, որ պատմում էր ընկեր Սարգսյանը, ավելի հետաքրքիր էր դառնում:

Արդեն ժամը մեկն էր: Անհրաժեշտ էր քնել: Երկու հոգի խարույկի մոտ հերթապահելու մնացին: Երկու ժամը մեկ հերթապահները պետք է փոխվեին: Վրաններում սաստիկ ցուրտ էր: Ժամը երեքն էր, բայց ցրտից չէինք կարողանում քնել: Հետո հոգնածությունը հաղթեց և

մենք քնեցինք: Որոշել էինք շուտ վերկենալ և արևածագը դիտել, սակայն առավոտյան սև ամպերի վարագույրին հանդիպեցինք: Աղջիկներով բորշչ եփելու պատրաստություն տեսանք: Այդ թաց տեղում, ցրտից սառած ձեռքերով եփած մեր ճաշը ոչ թե բորշչ էր, այլ տաք ջրի հետ խառնած կաղամբ: Խեղճ տղաները այնպես էին սառել, որ այդ տաք խառնուրդը հաճույքով կերան:

Ժամանակն էր ճանապարհվելու, քանի որ ժամը երեքին ավտոբուսը սպասելու էր լճի մոտ: Վրանները հավաքեցինք, իրերը կապեցինք և ճանապարհվեցինք: Էլի անձրև էր մաղում:

Երկար գնում էինք, մեկ էլ պարզվեց, որ սխալ է ճանապարհը: Հետ գնալն անմրտություն էր: Առջևը գորտերով լցված ճահիճ էր, կողքն անանցանելի քարափ, մի կողմը՝ լճի սառը ջրերը, հետևը դժվարամատչելի ժայռ:

Հուսահատված տղաներն այս ու այն կողմ էին գնում ճանապարհ որոնելու: Գորտերն այնքան բարձր էին կռկռում, որ թվում էր նրանց ձայներից էր, որ չէինք կարողանում կողմնորոշվել: Շուտով մոտորանավակի ձայն լսվեց: Մեր հարայհրոցից մոտորանավակը մոտեցավ ժայռին և միջից դուրս եկավ հաղթանդամ, արևից այրված դեմքով, կանաչ աչքերով հասարակ հագնված մի մարդ: Ծանոթացավ մեզ հետ, անունը Սարգիս էր: Իմանալով մեր վիճակը, նա մագլցելով բարձրացավ ժայռը՝ հարմար ճանապարհ գտնելու: Շուտով վերադարձավ և մեզ առաջնորդեց: Քիչ անց նրա օգնությամբ բոլորս արդեն ժայռի կատարին էինք:

Մեր առջև փռված էր մանուշակների, զանգակածաղկի և դաշտային այլ ծաղիկների մի աշխարհ: Մոռանալով, որ մի քանի րոպե առաջ անհուսալի վիճակում էինք, սկսեցինք վազվզել՝ մեկ այս ծաղկի, մեկ այն թփի մոտ, մինչև տեղ հասանք: Դեռ ավտոբուսը չէր եկել: Աղբյուրի մոտ մեզ ճանապարհ ցույց տվողի հետ նստեցինք ճաշելու մինչև երևաց ավտոբուսը, մենք նորից ու նորից շնորհակալություն հայտնելով Սարգսին, հրաժեշտ տվեցինք նրան: Նստեցինք ավտոբուս և վառ տպավորություններով հասանք Երևան: Համոզված եմ, որ երբեք, երբեք, չեմ մոռանալու մեր դժվարին ու հետաքրքիր արշավը:

**ՍՈՒՍԱՆՆԱ ԱՐՇԱՖՅԱՆ**
**Երևանի № 143 դպր. 10-րդ դաս.**



# ՀՐԱԺԵՇՏ ԴՊՐՈՑԻՆ

Հեռանում ենք դպրոցից, հեռանում ենք իրարից ես ու իմ համադասարանցիները: Տխուր ենք, տխուր է մեր դասարանը: Մինչև մեր դպրոցական վերջին զանգը՝ հաշված օրեր են մնացել, հաշված ժամեր ու վայրկյաններ: Իմ դըպրոցական տարիների վերջին գարուն, այսօր ես քեզ դիմավորում եմ դարձյալ իմ դպրոցական նըստարանին նստած, իսկ եկող տարի գարունը ես որտե՞ղ կդիմավորեմ, արդյո՞ք ուսանողական կյանքի հորձանուտում: Այս գարունը կարծես մի անհետացող չքնաղ երազ լինի, նրա ամեն ինչը՝ թե անձրևը, թե քամին և թե արևը գեղեցիկ են մի ուրիշ տեսակ: Այլևս չեմ գալու և գնալու այն ճանապարհով, որով տասը տարի գնացել եկել եմ ուրախ ու անհոգ: Այլևս չեմ նստելու այս նստարանին, որը տասը տարի իմն է եղել: Ա՜խ, դպրոցական տարիների վերջին գարուն, դու կըրկընվելու ես, բայց ոչ ինձ համար, այլ՝ ուրիշների:

**Դպրոց... իմ ուսման տուն, կարծես երեկ էր, որ ես հուզմունքով ոտք դրեցի քո շեմին, քո դռների ետևում թողնելով իմ լքված տիկնիկների ու խաղալիքների աշխարհը:**

**Իսկ հիմա հրաժեշտ եմ տալիս նաև քեզ:**

**Կարծես մեր դպրոցի բակի ծառերն էլ են տխրել: Սրանք, որ տարիներ շարունակ ուղիղ ու ձիգ կանգնած են եղել, այսօր կարծես ծնկի են իջել ու տրտում հըրաժեշտ են տալիս մեզ:**

**Ա՜խ, սիրելի դպրոց: Մեկ ամիս առաջ երազում էի այս օրը, իսկ հիմա չեմ կարողանում հաշտվել բաժանման մտքի հետ... Ա՜խ, այլևս չեմ լսելու դասի զանգը, ուսուցիչներիս անուշ ձայնը...**

**Կարծես երազի մեջ լինեմ:**

ԷԼՅԱ ՄԱԿԻՉՅԱՆ
Երևանի № 141 դ. 10-րդ դաս.

# ՏԻԳՐԱ



ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Տիգրան Առաջինի մահից հետո Հայոց գահը ժառանգեց նրա որդի Տիգրանը, որ հետո կոչվելու էր Տիգրան Մեծ: Նա շուրջ 10 տարի պատանդ էր պարթևական արքունիքում և մ. թ. ա. 95-ին Պարթև թագավոր և իր փեսա Միհրդատ Բ-ի աջակցությամբ գահ բարձրացավ:

Տիգրան Մեծը հայկական բանակի գլուխն անցած՝ իրար ետևից նվաճեց ու հպատակեցրեց հարևան մեծ ու փոքր թագավորությունները, Հայաստանի սահմանները հասցնելով Միջերկրական ծովի ափերից մինչև Կասպից ծով, Քուռ գետից մինչև Միջագետք:

Տիգրան Մեծին ահա թե ինչպես է բնութագրում պատմահայր Խորենացին. «Իր ժամանակակիցներին նախանձելի էր նա, հետագա սերունդներին՝ ցանկալի ինքը և իր ժամանակը... Նա մեր ազգը բարձրացրեց, լծի տակ եղողներիս՝ շատերի վրա լծադիր և հարկապահանջ դարձրեց. բոլոր տղամարդկանց ու կանանց համար առատացրեց ոսկյա և արծաթյա զարդերը, պես-պես գույների պատվական քարերը և զգեստները, որոնցով տգեղները գեղեցիկ էին երևում, իսկ գեղեցիկները իրենց ժամանակի դյուցազուններն էին դառնում: Հետևակը ձիերի վրա նստեց, պարսավորները դարձան դիպուկ աղեղնավորներ, գուրզ կրողները զինվեցին սրերով ու նիզակներով, մերկերը ծածկվեցին վահաններով ու զրահներով: Թշնամուն հալածելու համար բավական էր ի մի հավաքված այդ զորքի տեսքը միայն, նրա զենք ու զրահի փայլը և շողշողալը»:

Հայաստանը հին աշխարհի մեծագույն տերություններից մեկն էր դարձել, որի հետևանքով մայրաքաղաք Արտաշատը մնացել էր երկրի հյուսիսում: Տիգրանն իրեն նստավայր էր ընտրել այն ժամանակվա խոշորագույն քաղաքներից մեկը՝ Անտիոքը, որն ուներ շուրջ 500 հազար բնակիչ: Բայց հարկ էր, որ հայոց մայրաքաղաքն ու իր նստավայրը հայկական հողում լինեն, և մ. թ. ա. 80-

# ՆԱԿԵՐՏ

ական թվականներին, Աղձնիքում, Արևմտյան Տիգրիսի ձախակողմյան վտակ Քաղրիդ գետի հովտում, նա հիմնադրեց նոր մայրաքաղաք՝ Տիգրանակերտը: Ըստ Ապպիանոսի, քաղաքը կառուցվել է հենց այն վայրում, որտեղ Տիգրանը թագադրվել էր:

Հնում ընդունված կարգի համաձայն, նոր քաղաքներ հիմնադրելիս այնտեղ էին տեղափոխում այլ, հիմնականում նվաճված քաղաքների բնակչությանը: Տիգրանը իր նորակառույց մայրաքաղաք քշեց Կիլիկիայի, Կապադովկիայի և Ասորիքի 12 քաղաքների բնակչությանը: Այնտեղ բնակեցվեցին նաև բազմաթիվ հայեր և հայ ավագանին, որոնք արքային սիրաշահելու համար շռայլորեն փողեր էին նվիրում քաղաքի կառուցապատմանը, իրենց նոխ ապարանքներով ու պալատներով գեղեցկացնում այն:

Տիգրանը քաղաքը շրջափակեց 25 մետր բարձրությամբ հաստ պարիսպներով, որոնց մեջ տեղավորված էին ախոռներ և այլ շինություններ: Քաղաքի արվարձանում կառուցեց իր պալատը, շուրջը՝ լճեր, զբոսայգիներ, որսատեղեր և մի հզոր բերդ:

Քաղաքի բնակչությունը 10—15 տարվա ընթացքում հասավ 100 հազարի: Այստեղ, Տիգրանի արքունիքում էին ապրում հույն փիլիսոփաներ, հռետորներ, պատմագիրներ, որոնցից մեզ հայտնի են միայն երկուսի՝ Աթենացի Ամփիկրատեսի և Մետրոդորոս Սկեփսիացու անունները: Վերջինս հեղինակել է Տիգրանի և նրա նախնիների մասին մի աշխատություն, որից, դժբախտաբար, մի աննշան բեկոր է պահպանվել:

Մ. թ. ա. 69 թ. գարնանը Տիգրանը գտնվում էր իր հսկայածավալ տերության հարավարևմտյան ծայրամասում: Նրա բանակը պաշարել էր Պտղոմայիս քաղաքը՝ Սելևկյան Սելենե թագուհու նստավայրը: Շուտով Պտղոմայիսը նվաճվեց և Սելենե թագուհին գերվեց: Թագավորն ու զորքը դեռ տոնում էին հաղթանակը, երբ լուր ստացվեց, թե հռոմեական բանակը գաղտագողի մտել է Հայաստան և սրընթաց արշավում է դեպի Տիգրանակերտ: Լուկուլլոսը հասնելով Տիգրանակերտ, պաշարեց քաղաքը: Տիգրանը իր վեց հազարանոց հայկական զորամասով շտապեց մայրաքաղաք, անակընկալի բերելով հռոմեացիներին, ներս խուժեց քաղաք, այնտեղից վերցնելով իր կանանոցն ու գանձերը, կրկին ճեղքեց անցավ հռոմեացիների պաշարող օղակը, որպեսզի զորք գումարի և ճակատամարտ տա զավթիչներին: Շուրջ կես տարի քաղաքը հերոսաբար պաշտպանվում էր:

Քաղաքի պաշտպաններն ապրում էին այն հույսով, թե ահաահա կգա Տիգրանն ու իրենց կազատի: Վերջապես, աշնանը Տիգրանը իր 70—80 հազարանոց բանակով հասավ Տիգրանակերտի մատույցները: Լուկուլլոսի զորքը կրկնակի քիչ էր, 14 հազար հռոմեացի, մի այդքան էլ դաշնակից զորամասեր: Տիգրանը, որ դեռ չէր ճաշակել պարտության դառնությունը, նայելով հռոմեական բանակին, կատակում էր. «Եթե սրանք դեսպաններ են՝ շատ են, իսկ եթե թշնամի՝ հույժ սակավ»:







Ճակատամարտը տեղի ունեցավ հոկտեմբերի 6-ին: Լուկուլլոսին հաջողվեց հայկական զորքի թիկունքն անցնելով, խիզախ ու անակնկալ հարձակումով խառնաշփոթ առաջացնել և ի վերջո հաղթանակ տանել: Հայկական զորքը փախուստի դիմեց: Լուկուլլոսը կրկին պաշարեց Տիգրանակերտը և այս անգամ քաղաքի օտարազգի, հատկապես հույն բնակչությունը ապստամբելով, դավաճանությամբ քաղաքը հանձնեց թշնամուն:

Պլուտարքոսը գրում է. «Իմանալով, որ քաղաքում գտնվում են մեծ թվով դերասաններ, որոնց Տիգրանը ամեն կողմից հավաքել էր հիմնադրած թատրոնի բացման հանդիսավոր արարողության համար՝ Լուկուլլոսն օգտագործեց նրանց իր հաղթանակի առթիվ կազմակերպված խաղերի ու հանդիսությունների ժամանակ»:











Զմեռելով Տիգրանակերտում, Լուկուլլոսը հաջորդ տարին՝ 68-ին, լքում է քաղաքը, իր հետ տանելով հսկայաքանակ հարստություն: Հռոմեացիները շարժվում են դեպի Արտաշատ, բայց Արածանիի գետանցում իր 100 հազարանոց բանակով նրանց էր սպասում Տիգրանը: Այս անգամ Տիգրանը ընտրություն չուներ, միայն հաղթանակը կարող էր փրկել երկրի անկախությունն ու ամբողջականությունը: Մարտն անզիջում էր: Հայերը հաղթանակ տարան: Նրանք ոչ միայն փոխել էին իրենց ռազմավարությունը, այլև զենքերը: Հայերի նետերի մասին ահա թե ինչ է գրում հռոմեացի պատմիչ Դիոն Կասսիոսը. «Նրանք գործածում էին երկճայր նե-

տեր, և ծայրերը այնպես էին իրար ագուցված, որ նետերը թե՛ մարմնի որևէ մասում մնալու և թե՛ դուրս քաշվելու դեպքում, արագորեն սպանում էին, որովհետև երկաթյա ծայրերից մեկը, որը չէր ամրացված, մնում էր վերքի մեջ»: Այսպես անփառունակ ավարտվեց հռոմեացիների մուտքը Հայաստան:

Տիգրանակերտի հետագա շուրջ մեկդարյա պատմությունը համեմատաբար խաղաղ էր: Այն շարունակում էր մնալ Հայաստանի մեծագույն քաղաքներից մեկը: Այսպես տևեց մինչև մ. թ. 59 թվականը, երբ Արտաշատը նվաճելուց հետո դեպի Տիգրանակերտ ուղղվեց հռոմեական մեկ ուրիշ զորավարի՝ Կորբուլոնի զորքը: Այս անգամ նս քաղաքը դավաճանությամբ հանձնեցին նրա օտարազգի բնակիչները, որոնք Տակիտոսի վկայությամբ, ոսկե պսակ հանձնելով Կորբուլոնին, նրան առաջնորդեցին քաղաք:

Չանցած մեկ-երկու տարի, հայ-պարթևական միացյալ ուժերը պաշարեցին Տիգրանակերտը, որտեղ նստում էր Հռոմի դրածո Տիգրան Վեցերորդը, որպեսզի Հայոց գահին վերահաստատեն Տրդատ Առաջինին: Այդ նրանց հաջողվեց Հռանդեայի հաղթանակից հետո:

Տրդատի մահից հետո թագավոր հռչակվեց Սանատրուկը:

Փավստոս Բուզանդի վկայությամբ, նա հիմնադրեց Մծուրք քաղաքը: Այս քաղաքին չհաջողվեց համահայկական նշանակություն ձեռք բերել և մայրաքաղաք դառնալ:

Սանատրուկից հետո, երկու դրածո թագավորների կարճատև տիրապետությունից հետո, Հայոց գահը ժառանգեց նրա որդին՝ Վաղարշակ Առաջինը (117—140), որն իր հերթին նոր մայրաքաղաք հիմնեց և կոչեց իր անունով՝ Վաղարշապատ:

Դադարելով երկրի գլխավոր քաղաքը լինելուց, Տիգրանակերտը այնուամենայնիվ ակտիվ դեր էր կատարում Հայաստանի տնտեսական և քաղաքական կյանքում: Նկարագրելով քրիստոնեության մուտքը Հայաստան, Զենոբ Գլակը պատմում է, որ այն խաղաղ չի եղել և քրմերին օգնելու համար յոթ հարյուր հոգի է եկել Տիգրանակերտից:

Մի քանի դար լինելով Հայաստանի հարավային սահմանային Աղձնիքի բդեշխության կենտրոնը, Տիգրանակերտը քանիցս ենթարկվել է կողոպուտի ու թալանի, ավերվել ու վերաշինվել: Բայց, երևի, ամենածանր հարվածը քաղաքին հասցրել են պարսից Շապուհ արքայի զորքերը, որոնք 364 թվականին գրավելով Տիգրանակերտը, ինչպես հաստատում է Փավստոսը, քառասուն հազար ընտանիք են գերեվարում: Արաբական տիրապետության շրջանում, 7-ից 9-րդ դարերում, Տիգրանակերտը, որն այն ժամանակ կոչվում էր Մուաֆարկին կամ Ֆարկին, կրկին կենդանանում է, աշխուժանում են քաղաքային կյանքն ու արհեստները, առևտուրը: Այդ դարերում նախկին Տիգրանակերտը մի ընդարձակ մարզի վարչական կենտրոն էր: Բայց Բյուզանդիայի ու Արաբական խալիֆայության միջև մղված պատերազմների ընթացքում և հետագայում քաղաքը կրկին ու կրկին ավերվում ու վերաշինվում է, մինչև որ 12-րդ դարից սկսած դանդաղորեն լքվում է, դառնում գավառական կենտրոն:

Երկար ժամանակ ուսումնասիրողները ու պատմաբանները Տիգրանակերտը շփոթում էին Ամիդ-Դիարբեքիրի հետ:

Այսօր էլ Թուրքիայի Ֆարկին գյուղի մոտ կարելի է տեսնել հին աշխարհի հռչակված քաղաքներից մեկի՝ Տիգրանակերտի պարիսպների ու այլ շինությունների մնացորդները:







# ԳԺԻՆ ԽԵԼՔ ՍՈՎՈՐԵՑՆՈՂԸ




Երկու եղբայր են լինում, մեկը՝ խելոք, մեկը՝ ծալը պակաս: Մի օր էս ծալը պակասը էշին ցախ բարձած, անտառից տուն է գալիս, բեռը թափում ու սկսում ցախի մեջ ինչ-որ բան փնտրել:

— Էդ ի՞նչ ես անում,— հարցնում է խելոքը:

Սա թե՝

— Ճամփին մի մախաթ եմ գտել, դրել եմ ցախի մեջ՝ բերել: Էդ մախաթն եմ ման գալիս:

— Ա՜յ տունդ չքանդվի, հա՜,— ծիծաղում է խելոքը,— երկաթ-մերկաթի տեղակ մի քիչ խելք հավաքեիր, խելք: Մախաթը, որ գտնում են, ա՜յ խելոք, շուլալում են արխալուղի կրծքին, ոչ թե գցում իշաբեռ ցախի մեջ:

— Լավ,— ասում է գիժը,— էս ինձ խրատ, սրանից հետո էդպես կանեմ:

Մյուս օրը, էլի էշին բարձած, հիմարը տուն գալիս է լինում, ճամփին մի խանչալ է գտնում: Ի՞նչ անի, ի՞նչ չանի: Հիշում է խելոք եղբոր խրատը և խանչալը խրում է արխալուղի կրծքին, բերում տուն:

Խելոքը թե՝

— Ի՞նչ կա, ի՞նչ չկա:

— Ինչ պիտի,— ասում է գիժը,— էլի բախտս բերեց. ճամփին մի խանչալ գտա: Էս է, խրել եմ արխալուղիս կրծքին:

— Ա՜յ դու խանչալի փայ դառնաս, բա ափսոս չէ՞ր արխալուղը, որ խանչալի համար պատռել ես... Խանչալը կրծքին կխրե՞ն, թե գոտուց կախ կտան:

— Լավ, էս ինձ խրատ, սրանից հետո էդպես կանեմ,— ասում է հիմարը:

Մի օր էլ անտառից վերադառնալիս՝ նա մի անտեր շան լակոտ է տեսնում, բռնում է, թոկը գցում վիզը, գոտուց կախ տալիս ու բերում տուն:

— Վա՜հ, էդ ի՞նչ որս ես արել,— ձայն է տալիս խելոքը:

Հիմարը թե՝

— Շան լակոտ էր, գտա բերի:

— Ա՜յ դու շան փայ դառնաս, բա շան լակոտին կողքից կախ կտա՞ն: Շան լակոտին «քուչի-քուչի» կանչելով, հետևը գցած՝ տուն կբերեն: Խե՜լք հավաքի, խե՜լք...

— Լավ, սրանից հետո, ոնց որ ասացիր, էնպես կանեմ:

Մի օր էլ էս հիմարը ցախ հավաքելիս, ծառի տակ մի կացին է տեսնում: Եղբոր խրատը միտն է ընկնում, կանչում է.

— Քուչի՜-քուչի՜, կացի՛ն, քուչի՜-քուչի՜, կացի՛ն,— կանչում է ու ետ-ետ նայելով՝ էշը քշում. կացինը ո՛չ լսում է, ո՛չ տեղից շարժվում: Հիմարը բարկանում է, մտածում, երբ տեսնում է, որ էն կողմից էլ մի փչակավոր ծառ, ռեխը լեն բացած՝ իր վրա ծիծաղում է: Բարկանում է հիմարը, ետ դառնում, կացինն առնում, տանում-բերում և առ հա՝ ծառի ճակատին: Որ խփում է՝ էս ծառի ճակատը ճղվում է ու միջիցը դեղին-դեղին, ծոր-ծոր «խելքը» գալիս թափվում է:

— Էս հո լա՜վ եղավ,— ուրախանում է հիմարը,— ախպերս մի գլուխ ասում է. «Խե՛լք հավաքի, խե՛լք»: Էս է՝ ծառի խելքը հավաքեմ ուտեմ, մի քիչ խելոքանամ:

Ասում է ու ծորացող մեղրից մի ճանկ առնում, լցնում է գրպանը և մատ-մատ ուտելով՝ էշը քշում գալիս է տուն:

Խելոքը տեսնում է մեղրն ու թե՝

— Ա՜յ դու խելքի պուտուկ, բա ծառի խելքը գրպանո՞վ կբերեն: Ծառի խելքը կճուճով կբերեն: Դե վե՛ր կաց գնանք, քանի շուտ է, հավաքենք բերենք, թե չէ ուրիշները կտանեն:

Էս անգամ էլ խելոքն ու գիժը, էշի վրա, խուրջինում երկու կճուճ, գալիս են անտառ: Գտնում են մեղրի փչակը, մոտենում, որ շերեփ-շերեփ դատարկեն: Դու մի ասի՝ մեղուներն արդեն իրար ձեն տալով՝ դաշտից հավաքվել եկել են, գազազած սպասում են թշնամուն: Վրա են տալիս էս երկու եղբորն ու դրանց խեղճ էշին: Տը՜զ-տը՜զ, վը՜զ-զը՜զ, զզում են ու զզում, կծում են ու կծում: Գիժն ու խելոքը վա՜յ-վա՜յ անելով, էշն էլ զռոցը գցած, ծառերին, քարերին խփվելով, գլորվելով՝ նետվում են դեպի ձորը, դեպի պաղ ջուրը:

Հենց որ մի քիչ ուշքի են գալիս, տեսնում են, որ ո՛չ էշի մեջ հոգի է մնացել, ո՛չ էլ խուրջինի մեջ կճուճ: Իրենք էլ, ուռած-փքված, գլուխները մի-մի կճուճ, աչքերը հազիվ են բաց անում:

Էստեղ խելոք եղբայրը խփում է իր գլխին ու ասում.

— Գժին խելք սովորեցնողն ինքն էլ գիժ է...

ՍՈՒՐԵՆ ԲԱԶԻՆՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

### «ՆԵՅՏՐՈՆԻԿ»

1932 թվականին ռադիոակտիվ քայքայման ռեակցիան ուսումնասիրելիս հայտնաբերվեց էներգիայի կորուստ: Գիտնականները մանրակրկիտ չափեցին միջուկից անջատված բոլոր մասնիկների էներգիան, բայց կորուստը չհայտնաբերվեց: Այդ ժամանակ գերմանացի հայտնի ֆիզիկոս Պաուլին ենթադրեց, որ առեղծվածային «գողը» մի մասնիկ է, որը զուրկ է էլեկտրական լիցքավորումից և այնքան փոքր է, որ հետք չի թողնում միջուկի քայքայման ընթացքը վավերացնող լուսանկարչական թերթիկի վրա:

Իտալացի ֆիզիկոս Էնրիկո Ֆերմին առաջարկեց այդ ճստիկին անվանել «նետրինո», օգտագործելով փաղաքշական «ինո» ածանցը, ինչպես Բուրատինո, Չիպոլինո անուններում: Այնպես որ «նետրինո»-ն կարելի է հայերեն թարգմանաբար կոչել «նեյտրոնիկ»:

### ՄԻ ԳՐԳՌԵՔ՝ ՄՈՐԵԽՆԵՐԻՆ

«Հարգելի հյուրեր, թախանձագին խնդրում ենք չգործածել կանաչ գույնի որևէ իր կամ հագուստ»: Այսպիսի տարօրինակ հայտարարություն է դիմավորում Ֆիններս կղզին այցելողներին: Ավստրալիացիների շրջանում հռչակ վայելող այս առողջարանը վերջերս բառացիորեն ծածկվել էր ամֆիվ-անհամար մորեխներով, որոնք անհաղթահարելի կիրք են տածում ընդհանրապես կանաչ գույնի նկատմամբ, բույս լինի թե զգեստ: Անցած տարվա դեկտեմբերից կղզում չի մնացել որևէ բուսականություն, բոլորը խժռել են:

### ԱՅԴՊԵՍ ԱՎԵԼԻ ԱՐԱԳ Է

Լոնդոնի փողոցներում կրկին կարելի է տեսնել փոստային պայուսակները մեջքերից կախված հեծյալների: Փողոցային երթևեկության ներկա պայմաններում, հատկապես «պիկ» ժամերին, փոստային առաքումները այդպես ավելի արագ են տեղ հասնում, քան ավտոմեքենայով կամ մոտոցիկլով:

# «ԽՈՍԵՔ ԻՆՁ ՀԵՏ, ԽՆԴՐՈՒՄ ԵՄ, ՍԻՐԱԼԻՐ»



ԿԼՈԴ ԲՈԺԱՆ (ֆրանսիացի գրող)
Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ֆրանսիան տառապում է կոպտությամբ: Այդ համաճարակը մոլեգնում է Փարիզում և հետզհետե տարածվում մյուս քաղաքներում: Խոսքդ չավարտած՝ դուռը շրխկում է քթիդ առաջ, զրուցակիցդ շրխկալով ցած է նետում հեռախոսափողը, ֆրանսիացին ֆրանսիացուն հանդիպելիս դժկամությամբ «ողջույն» է շպրտում, դժվարությամբ է շնորհակալություն կորզում, ներողություն է ասում ատամների արանքից: Գանձապահը ձեզ նկատել չի ուզում հաստատապես, մատուցողը բացահայտ գռեհիկ է վարվում հետներդ, պատահական անցորդը ամենաանմեղ հարցիդ պատասխանում է կոպիտ:

Մեր ավանդական սիրալիրությունն ու՞ր է չքացել:

Յուրաքանչյուր հասարակարգ վարքագծի իր չափանիշներն ունի, այլապես ինչպե՞ս կգոյակցեն մարդիկ իրար հետ: Սակայն այսօր այնքա՜ն հաճախ են խախտվում այդ չափանիշները, մարդիկ ամբարիշտ են դարձել, բղավում են մեկը մյուսի վրա: Մետրոյում թե մարդաշատ փողոցում, կամ հերթի կանգնելուն պես սկսում ես նյարդայնանալ:

«Խոսեք ինձ հետ, խնդրում եմ, սիրալիր»,— աղերսում է քարտուղարուհու սեղանի մոտի ցուցանակը: «Իմ սիրտը թույլ է»— նախազգուշացնում է մի այլ ցուցանակ՝ կադրերի բաժնում: Թերթերի կրպակում կախված պլակատը խստորեն հայտնում է. «Սա տեղեկատու բյուրո չէ: Բայց եթե դուք քաղաքավարի լինեք, ձեր բոլոր հարցերին կպատասխանեմ»: Փոստատան հայտարարությունում կարդում ենք. «Դժգոհություն արտահայտող ծամածռությունն ավելի շատ մկանային ուժ է պահանջում, քան ժպտալը: Ուրեմն, ժպտացեք»:

Մենք, սկսել ենք անցյալի բարեհաճ վերաբերմունքի կարոտն զգալ, երբ գոնե նվազագույնս երաշխավորված էր մարդու հարգանքը մարդու նկատմամբ: Վայելչության դարերով մշակված ըմբռնումները մեծ մասամբ հնացել են, ժամանակակից ապրելակերպին և կյանքի ռիթմին այլևս չեն համապատասխանում: Նախկինում, օրինակ, ձեռքերը գրպանում զրուցելն անվայելուչ էր համարվում: Այսօր դա մեզ այնքան էլ չի հուզում: Սակայն խիստ զայրանում ենք, երբ ավտովարորդը գիշերային լռության մեջ աներեսաբար անընդհատ ազդանշան տալով, արթնացնում է ողջ փողոցը: Շուտով կգա մի օր, երբ նման վարմունքը խստորեն կարգելվի (ինչպես ոչ վաղ անցյալում արգելվում էր հատակին թքելը): Ավտովարորդը մարդու նոր «տեսակ» է, և նրա դաստիարակությունը նոր է սկսվել: Մեքենա վարելու կանոնները այլ բան չեն, քան ավտովարորդների քաղաքավարական վարվեցողություն:

Քաղաքավարության դըրսևորումը միշտ էլ որոշ չափով խոնարհում է նշանա-

կել: Իհարկե, լակոնիկ «բարևը» կամ «ողջույնը» ոչընչով չեն պարտավորեցնում: Բավական է, սակայն, ավելացնել «Բարև՛ ձեզ, պարո՛ն»,— և հարգալիրության երանգն անմիջապես ի հայտ է գալիս: Շնորհակալ լինել՝ նշանակում է պարտական զգալ: Ներողություն խնդրել՝ ինքդ քեզ մեղավոր ճանաչել: Տեղը զիջել՝ նշանակում է ուրիշի իրավունքը ճանաչել այդ տեղի վրա: Ուշադրության այս նշանները նախկինում ինքնըստինքյան հասկանալի են եղել: Այսօր դրանք հանկարծ անընդունելի են դառնում:

Խոնարհվե՞լ: Ոչ, շատերը ավելի շուտ նվաստանալ են համարում այդ: Մեկը կասկածում է. արժե՞ կռանալ և բարձրացնել անցորդի վայր գցած թաշկինակը: Նվաստացում չէ՞ դա: Մեկ ուրիշը հին ոճի նրբակիրթ երևալու վախից ոչ մի կերպ տեղը չի զիջում կնոջը:

Մեր նկատմամբ մենք հարգանք պահանջում ենք, բայց արդյոք նույնպիսի հարգանք ցուցաբերո՞ւմ ենք ուրիշների նկատմամբ: Ո՛չ: Հետևաբար կոպտությունը կոպտություն է ծնում:

Այժմ մենք շատ իրավունքներ ունենք: Բայց շատ հաճախ դրանցից օգտվում ենք անհարկի ու նաև բավականին գռեհկորեն: Գընորդը դատարանով է ահաբեկում վաճառողին, վերջինս նույն ձևով պատասխանում է գնորդին: Վերանորոգման արհեստանոցի այցելուն ցեխ է շպրտում վարպետների վրա, սրանք էլ ոչ պակաս ոգևորությամբ այցելուին են հայհոյում:

Ծառայողները բարեկամաբար են խոսում միայն իրենց գործընկերների հետ, վաճառողը բարյացակամորեն սպասարկում է միայն մշտական հաճախորդներին: «Ստարներին» լուռ թշնամանքով է դիմավորում: Այդպիսի վերաբերմունք շուտ են յուրացնում որոշ դեռահասներ:

«Ես բարևում եմ,— ասում է Ֆրեդերիկ անունով մի տղա,— միայն իմ սիրելի ուսուցիչներին»:

«Եթե մարդն ինձ չի հետաքրքրում,— հայտարարում է մեկ ուրիշը՝ Կարոլինան,— ձևացնում եմ, թե նրան չեմ նկատում»:

Մշտնջենական տարաձայնություն կա արտաքին՝ շարժուձևի, քաղաքավարության և սրտի՝ ներքին քաղաքավարության մ ի ջ և: Շատ ֆրանսիացիներ հակված են առաջնությունը երկրորդին տալ:

Բայց ժամանակակից աշխարհին որքա՞ն է հարկավոր շարժուձևի քաղաքավարությունը: Խանութում գնորդը վաճառասեղանի ետևն է անցնում ապրանքը ընտրելու համար: Լեփլեցուն վագոնում ուղևորը երկու նստարան զբաղեցնում է կապոցներով: Մեկը թքում է, մյուսը կավճով նկարում է շքամուտքում: Սրանց նըկատմամբ շրջապատի վերաբերմունքը տարբեր է լինում. կծու դիտողություն, կոպիտ հայհոյանք, վատթարագույնը՝ տուրուդմփոց: Քաղաքում մարդիկ, ի տարբերություն գյուղի, հաճախ չեն էլ ճանաչում դուռ-դռան հարևանին, էլ ի՞նչ խոսք կարող է լինել նույն շենքի կամ փողոցի բնակիչների մասին: Եվ դա նույնպես, ինչպես նաև կուտակվածությունը, քաղաքային կյանքի համար աղետ է դառնում:

Փարիզի փոստային բաժանմունքներից մեկը տեղափոխվել էր: Ծառայողները, որոնք նախկին վայրի այցելուների հետ բարեկամական հարաբերություններ էին հաստատել, այժմ իրենց դիմաց տեսան անհամբեր ու գրգռված «օտարների»: Շուտով, փոստատան վրա կատարված զինված հարձակումից հետո, այստեղ լուսամուտներին հրազենից չծակվող ապակի գցեցին: Դրանից փոխհարաբերություն ն ե ր ի լրացուցիչ դժվարություններ առաջացան: Մեկն այն չէր լսում, մյուսը այնպես չէր հասկանում: Փոխադարձ վիրավորանքներին ու նախատինքներին վերջ չըկար:

Ի դեպ, ԳՖՀ-ում երեք հարյուր հրահանգիչներ հիսուն հազար փոստային ծառայողների ուսուցմամբ են զբաղվում: Պարապմունքների նպատակն է թուլացնել դյուրագրգիռ այցելուների ու կամակոր փոստատարների միջև առաջացած ծայրագույն լարվածությունը:

Սրտի (ներքին) քաղաքավարությունը անբաժան է վարվեցողության (արտաքին) քաղաքավարությունից: Նշանակում է, պետք է քաղաքավարության նոր կանոններ ստեղծել, մարդկային փոխհարաբերությունների սայլի ճռացող անիվները յուղել:

Խոշոր խանութներում վաճառողներին մասնագիտական վարվեցողություն սովորեցնելու դասընթացներ են արդեն բացվում: Տեղից վեր կենալ, ընդառաջ գնալ գնորդին, տեղեկանալ նրա ցանկություններին, շնորհակալություն հայտնել գնումների համար: Այդ ամենն, իհարկե, տարրական «տեխնիկայի» հետ կապված բաներ են: Բայց չէ՞ որ քաղաքավարությունն էլ առաջին հերթին մարդկային փոխ-

հարաբերությունների տեխնիկա է:

Մեր հասարակության մեջ գոյություն ունեն քաղաքավարության կղզյակներ, որոնք պահպանվել են ամենօրյա անհրաժեշտությունից ելնելով: Ռազմանավերը այդպիսի «քաղաքավարության մոլորակներից» են: Դրանցից ամեն մեկը ներկայացնում է մի փոքրիկ աշխարհ, ծայրաստիճան զարգացած պատասխանատվության զգացում ունեցող բնակիչներով: Ռազմանավը մարդկային հասարակության փոքրիկ մոդել է, մարդկանց խումբ, որ ապրում է մշտական վտանգալից պայմանների հետ համակերպված, խիստ սահմանափակ մակերեսի վրա: Համերաշխությունն ու վստահությունն իրար նկատմամբ նրանց ողջ մնալու անհրաժեշտ պայմանն է:

Սուզանավում հիսուն մարդ ապրում և աշխատում են ավտոբուսի չափ տարածության վրա: Այդպիսի պայմաններում մի՞թե կարելի է հանդուրժել անտարբերությունն ու թշնամանքը, աննրբանկատությունն ու եսասիրությունը: Եթե նավի վրա ապրեին այնպես, ինչպես ապրում են այսօր փարիզցիները, ծովային նավատորմիղը վաղուց հօդս ցնդած կլիներ: Մարդկային կոպիտ հարաբերություններն ու անվերջ վեճերը ավելի շատ նավ կհանեն շարքից, քան ցանկացած ականադաշտը: Եթե նավախցիկում, որտեղ 15 նավաստի է քնում, ոտքերդ չլվանաս, կդառնաս սոցիալապես վտանգավոր տարր: Այստեղ գիշերվա ժամը 4-

## ԻՆՔՆԱՑԱՆ ԲՈՒՅՍԵՐ

Բնության մեջ սերմերի տարածման բազմաթիվ ձևեր գոյություն ունեն. քամու, ջրի, կենդանիների միջոցով և այլն: Միջերկրական ծովի ափերին աճում է մի բույս, որի սերմերը տարածվում են «կրակոցով»:

Այդ բույսը, այսպես կոչված «կատաղի վարունգը», պատկանում է դդմազգիների ընտանիքին, այսինքն ազգակից է ձմերուկին, դդումին, վարունգին և սեխին: Երբ հասունանում են խոշոր պտուղները, դրանց մեջ կուտակված սոսնձանման հյութը ուժեղ ճնշում է գործադրում պտղի պատերին և պայթեցնում: Պայթեցման հետևանքով սերմերի հետ խառնված սոսնձանման հյութը շպրտվում է 6—10 մետր հեռավորության վրա և ցրում սերմերը: Եթե մոտակայքից որևէ կենդանի կամ մարդ է անցնում, ապա սերմերը կպչում են նրան և նրա միջոցով տեղափոխվում ավելի հեռու:

«Կատաղի վարունգը» անվտանգ չէ: Սոսնձանման հյութը խիստ թունավոր է, եթե «կրակոցի» հետևանքով այդ նյութը լցվի մարդու կամ կենդանու աչքերի մեջ, ապա կուրությունը անխուսափելի է:

Արևադարձային մի շարք երկրներում պտուղները հասունանալու ժամանակ մեծ աղմուկ են առաջացնում, որը նմանվում է կրակոցի, թմբուկի հարվածների, կոտրվող փայտի ճռնչոցի և այլն:

Արևադարձային անտառների անխոնջ հետազոտող բուսաբան Գայը պատմում է, որ ինքը և իր ուղեկիցները ջունգլիներում հաճախ շփոթված կանգ էին առնում, մոտակայքում լսելով ատրճանակի կրակոցներ: Միայն հետագայում են նրանք իմացել, որ բաիկիա և բրախիստեգիա բույսերը պտղատուփերը բացվելիս նման ձայներ են արձակում: Աֆրիկական պենթա խելթրա ծառի պատիճները, որոնք հասնում են մինչև 80 սմ երկարության, ճայթում են խլացուցիչ աղմուկով՝ հիշեցնելով խոշոր տրամաչափի որսորդական հրացանի կրակոց: Բանից անտեղյակ մարդը կարող է մտածել, որ անտառում բազմաթիվ որսորդներ են թափառում: Նման ձայներ են արձակում նաև բաուխինիայի հունդերը: Հյուսիսային Ամերիկայի անտառներում աշնանը աղմուկով պայթում են վիրգինյան համամելիսի նախորդ տարվա գերհասունացած պտուղները՝ սերմերը մեծ ուժով շպրտելով հեռու:

Իրենց սերմերն աղմուկով շուրջն են սփռում նաև մի քանի սոճիների գերհասունացած կոները:

ին հերթապահության գնալիս շարժվում ես այնպես, որ հարևանիդ չարթնացնես, վերադառնալիս էլ կոշիկներդ աղմուկով դեսուդեն չես նետում:

Նավի վրա իշխում է նրբակիրթ սիրալիրությունը, մի բան, որ ուրիշ տեղ գուցե և ժպիտ հարուցեր: Դա հիմա այլևս մոռացված շքեղություն լինելով հանդերձ, զարդարում է մեր կյանքը: «Թույլ կտա՞ք արդյոք, ծխամորճ ծխել»,— պատշաճ ձևով հարցնում են նավախցիկ մտնելիս:

Ամեն առավոտ հանդիպելիս, բոլորը ծայրաստիճան հարգալից ողջունում են մեկմեկու: Սպասարկող անձնակազմը հավասարապես ուշադիր է թե՛ կրտսեր սպաների, թե՛ ծովակալի նկատմամբ: «Կրտսեր սպաների նավախցիկի սպասերը խնդրում են պարոն X-ին, պատիվ անել և ժամը 12-ին ճաշել իրենց մոտ»: Հրավերին, լոնդոնյան 19-րդ դարի ակումբի ոճով, պատասխանելու համար, մնում է անցնել միայն նավախցիկը բաժանող նեղ միջանցքը:

Եվ երբ ձեր կողքի մարդիկ, նախքան ներս մտնելը դուռը թակում են և մեկը մյուսին ճանապարհ տալով ներս մտնում, դուք նույնպես նրանց օրինակին հետևելով, ակամա ուզում եք ասել. «Բարև՛ ձեզ, ձե՛րդ արժանապատվություն, ինչպե՞ս եք»:

Եվ ստանալ պատասխանը. «Շնորհակա՛լ եմ, բարեկա՛մս, հրաշալի: Եղանակն էլ այսօր հիանալի է, այնպես չէ՞»:

Թարգմ.
Ռ. ԱՂՎԱՆՅԱՆԻ

---

Ինչպես պնդում են բուսաբանները, «ամենաաղմկոտ» բույսը մշտադալար հուրա կրեպիտանսն է: Երբ հասունանում են հուրայի սերմերը, դրանց պտուղը պայթում է, սերմերը շառաչյունով շպրտվում են մինչև 60 մետր հեռավորության վրա: Բուսաբան Մերի Բարետը այդ բույսն անվանում է «չափազանց վտանգավոր, որը ծակում է, թունավորում և կրակում: Գրականության մեջ երբեմն հուրան անվանում են նաև «կապիկների գոնգ», քանի որ պտուղը բացվելիս գոնգի ուժեղ ձայն է արձակվում: Հուրայի պտուղները և սերմերը խիստ թունավոր են և վտանգավոր մարդկանց ու կենդանիների համար:

Բնական կաուչուկ տվող բրազիլական հևեան ունի 3 սանտիմետրանոց եռաբաժին պարկուճներ: Հասունանալիս դրանք այնպիսի աղմուկով և ուժով են բացվում, որ սերմերը նետվում են մինչև 40 մետր հեռավորության վրա:

Թիթեռնածաղկավոր բույսերի ընտանիքին պատկանող մի շարք տեսակներ նույնպես ունեն խոշոր պատիճներ, որոնք հասունանալիս պայթում են խլացուցիչ ձայնով: Երբ ծառի վրա միանգամից մի քանի տասնյակ այդպիսի պտուղներ են հասունանում, այնպիսի ժխոր և աղմուկ է բարձրանում, ասես մոտակայքում թեժ մարտեր են մղվում: Այդ տեսակետից հատկապես հայտնի են աֆզելիան, բերլինիան և մի շարք այլ ծառատեսակներ:

Մադագասկարում աճող հարպագոֆիտում բույսն իր սերմերը տարածելու համար «դիմել է հանցավոր մեթոդի»: Նրա պտուղները դժոխային պարկուճներ են 13 սմ լայնությամբ, միաձուլված ձկան կարթեր հիշեցնող բազմաթիվ փշերով: Հասունանալիս դրանք ծածկվում են ավազով, միանգամայն աննկատ դառնալով մարդկանց և կենդանիների համար: Անտիլոպը, որը անզգուշություն է ունեցել ոտք դնել հարպագոֆիտումի պտղի վրա, հավանաբար իր կյանքում երկար կհիշի այդ տհաճ միջադեպը: Պտուղն իր բազմաթիվ կեռիկներով ամրանում է կենդանու ոտքին և որքան սա տհաճ բեռից ազատվելու համար ոտքը այս ու այն կողմ է խփում, այնքան սուր ու կեռ կարթերը ավելի են խրվում դժբախտ կենդանու ոտքի մեջ: Պտղատուփը կարծես «պայտվում» է անտիլոպի սմբակին: Խեղճ կենդանին այդ բեռով ստիպված է վազել մի քանի տասնյակ մղոններ, մինչև որ դժոխային տուփը ջարդվում, մասերի է բաժանվում, սերմերը ցրելով անցած ամբողջ տարածության վրա: Ահա թե ինչպիսի դաժան միջոցով է երբեմն բույսը տարածում իր սերմերը:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր

# ՀՐԱՇՔ ԽԱՂԸ



Այսօր աշխարհում բոլորը գիտեն հունգարական խորանարդիկի մասին: Ոմանք այն անվանում են կախարդական խաղ, մոգական հրաշալիք: Մարդիկ կան, որ պարզապես «հիվանդացել են» այդ խաղով, օրերով զբաղված են խորանարդիկը պտտելով: Խաղում են փոքրերը և մեծերը, անց են կացնում մրցույթներ՝ որոշելու համար խորանարդիկի նիստերն ամենից արագ հավաքողին: Իսկ խաղը հետևյալն է. խորանարդիկի վեց նիստերը ներկված են տարբեր գույներով: Յուրաքանչյուր նիստ կազմված է ավելի փոքր խորանարդիկներից, որոնք պըտըտվում են երեք հիմնական առանցքների շուրջ. Պտտվելիս խախտվում են բոլոր գույները, և խաղացողի խնդիրն է պտտեցնելով խորանարդիկի նիստերը, դրանք նորից դարձնել միագույն:

Հունգարական խորանարդիկը կարճ ժամանակում «նվաճեց» աշխարհը: Արտասահմանյան շատ երկըրներ, խոշոր ֆիրմաներ անմիջապես պատվիրեցին այդ խաղալիքի խոշոր սերիաներ, և սկսվեց «հըրաշք-խորանարդիկի» համաշխարհային հաղթարշավը: Իսկ «ծնվեց» խորանարդիկը 1975 թվականին, երբ նրա հեղինակը, հունգարացի ինժեներ-շինարար Էռնյո Ռուբիկը իր գյուտը ներկայացրեց Բուդապեշտի «Պոլիտեխնիկա» միավորման ղեկավարներին, որոնք էլ համաձայնեցին 1977 թվ. սկսել խորանարդիկի փորձնական արտադրությունը (ընդամենը հինգ հազար հատ): Հաջորդ տարին որոշեցին արտադրել 45 հազար խորանարդիկ, բայց հավատալով խաղալիքի հաջողությանը, արտադրեցին կրկնակին: Այն սպառվեց կայծակնային արագությամբ: Ե՛վ հեղինակը, և՛ արտադրողները զգացին, որ սա մեծ հաջողության սկիզբն է միայն: Եվ չսխալվեցին: 1981 թըվականին Բուդապեշտի աշնանային միջազգային տոնավաճառում 20 երկըրների կողմից խորանարդիկը պաշտոնապես ճանաչվեց տարվա լավագույն խաղալիքը: Իսկ Մեծ Բրիտանիայում 1982 թվին նս խորանարդիկը մնաց որպես անգերազանցելի խաղալիք:

Այժմ Հունգարիայում ամեն տարի արտադրում են 10—15 միլիոն խորանարդիկ:

Էռնյո Ռուբիկը թեպետ շատ զբաղված մարդ է և հազիվ է ժամանակ գտնում լինել երեխաների հետ, բայց միշտ մտածում է նըրանց հետաքրքիր անակընկալներ մատուցել: «Ամեն երեկո ես հեքիաթ եմ պատմում որդուս: Ես ուզում եմ, որ նա հեքիաթների օգնությամբ զգա, թե որն է բարին, գեղեցիկը, արդարն ու ազնիվը»: Մանկական հեքիաթները գրավում են ոչ միայն փոքրիկ Էռնյոյին, այլև նրա հայրիկին, որը նույնիսկ մեծերի հետ խոսելու ժամանակ մեջբերումներ է անում հեքիաթներից: Ահա մանկական այդ աշխարհն էլ Ռուբիկ հոր մտքում ծնում է հրաշալի խաղալիքներ, ինչպես կախարդական խորանարդիկը և նրա եղբայրակիցները՝ կախարդական օձը և կախարդական դոմինոն, որոնք թեպետ նոր են, բայց ճանաչում են ձեռք բերել Հունգարիայում:

Էռնյո Ռուբիկը նամակներ է ստանում աշխարհի տարբեր ծայրերից, որոնք բոլորն էլ ուղարկվում են կարճ հասցեով. «Հունգարիա, պրոֆեսոր Ռուբիկին»: Գրում են և՛ մեծերը, և՛

փոքրերը, հայտնում են իրենց շնորհակալությունը, խնդրում են Ռուբիկից իր լուսանկարը՝ ինքնագրով։ Իսկ տասը տարեկան հոլանդացի մի տղա գրում է. «Հարգելի՛ պրոֆեսոր Ռուբիկ։ Հրաշալի է, որ Դուք ստեղծել եք մոգական խորանարդիկը։ Բայց ափսոս, որ այն մեզ մոտ շատ թանկ է և մայրիկս չի կարող ինձ համար գնել։ Շուտով իմ ծննդյան օրն է, և ես երազում եմ, որ ինձ նվիրեն այդ խորանարդիկից։ Բարևում եմ Ձեր երեխաներին։

Հարցանքներով՝ ՎԵՆԴԻ ՀԱՄԱՆ»։



ԷՌՆՍԹ ՌՈՒԲԻԿԸ ՈՐԴՈՒ ՀԵՏ

Այնքան է մեծացել խորանարդիկի երկրպագուների թիվը աշխարհում, որ շատ երկրներում ստեղծվել են «Ռուբիկի խորանարդիկի» ակումբներ։ Այդ ակումբներում պարապմունքների ընթացքում սովորեցնում են խորանարդիկի հավաքման տարբեր եղանակներ, քննարկում են, թե ո՞ր եղանակն է ավելի կարճ և ռացիոնալ, լուծում են տարբեր տրամաբանական խնդիրներ։ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում «Ռուբիկի խորանարդիկ» ակումբն ընդգրկում է 40 հազար անդամ։ Իսկ հեռավոր Ճապոնիայում համանման ակումբում արդեն անց են կացվել մի քանի մրցույթներ՝ տարբեր տարիքի խաղացողների համար։ Խորանարդիկն այնքան մեծ հաջողության հասավ, որ որոշվեց անցկացնել խորանարդիկի աշխարհի առաջին առաջնությունը։

Այն տեղի ունեցավ 1982 թվականի ամռանը՝ Բուդապեշտում, որին մասնակցում էին տասնինը երկրներ։ Հաղթողներին որոշում էր միջազգային ժյուրին՝ խորանարդիկի հեղինակ Էռնյո Ռուբիկի գլխավորությամբ։ Հաղթող դարձավ տասնվեցամյա ամերիկացի Մանհ Թային, որն ընդամենը 22,95 վայրկյանում հավաքեց խորանարդիկը։ Հետաքրքիրն այն է, որ ինքը՝ Ռուբիկը, խորանարդիկը կարողանում է հավաքել միայն... երկու-երեք րոպեում։

ԱՆԱՀԻՏ ՍԻՄՈՆՅԱՆ




ՀԼԿՍՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 58-39-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.




Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 1. 03. 1983 թ., Ստորագրված է տպագրության 14.04.1983 թ.։ ՎՖ 11401։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 70052։ Պատվեր՝ 596։ Գինը՝ 15 կոպ.։

Сдано в набор 1.03.1983 г. Подписано к печати 11.04.1983 г. Формат. 70×100 1/16. ВФ 11401. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 70 052. Заказ 596. Цена 15 коп.